# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## №: 1 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկի 1-ին էջը՝
ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Շապիկի 4-րդ էջը՝
ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ





ՆԱՆՍԵՆ
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ՁՄԵՌԱՅԻՆ ՕՐՈՐ

Ձյունե գդակ սեգ կատարին՝
Ծերուկ սարն է անրջում,
Նրա լանջին ու փեշերին
Գորշ ամպերն են լուռ շրջում:
Ծղրիդներին թողած հանդում՝
Թռչունները չվեցին,
Ծաղիկները հողի գրկում
Անուշ-անուշ քնեցին:
Ու մաղթում է ձմռան քամին
Հոգնածներին հանդիստ քուն.
— Օրոր իմ լավ բալիկներին,
Ծաղիկներին գույնզգույն: —
Տատիկի պես երգում է նա.
— Օրոր ասեմ, որ քնեք,
Ձեր վերմակի տակից հանկարծ
Գլուխներդ չհանեք:
Թե որ ուզեք արթուն մնալ
Եվ գարունը վերհիշել,
Ձմռան օրը ձեզ կթվա
Մութ ու երկար մի գիշեր:
Սարի փեշին, ձորի լանջին
Անկողին է հողը տաք,
Քուն եք մտել աշնան վերջին,
Ձմռան վերջին կարթնանաք:



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

ՀԵՂԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ
*Երևան, № 137 դպրոց,*
*4-րդ դասարան*

# ՀԱՅԱՍՏԱՆ

**Հարցրեցի իմ մայրիկին,**
**Թե ի՞նչ բան է Հայաստանը:**

**Ձեռքը պարզեց նա քարտեզին**
**Եվ ցույց տվեց**
**Ինձ հին ու նոր Հայաստանը:**

**Ասաց.**
**— Այստեղ պապդ է ծնվել,**
**Իսկ այստեղ՝ դու:**
**Նա արմատն է,**
**Իսկ դու՝ ճյուղը,**
**Եվ երկուսդ էլ Հայաստանն եք՝**
**Նա հին, դու՝ նոր...**

# ՈՎ ԻՆՁ Է ԱՆՈՒՄ

**Գետակը հոսում է**
**Անվերջ ու անվերջ,**
**Ծառն օրորվում է**
**Քամիների հետ,**
**Շունը հաչում է**
**Նույն խռպոտ ձայնով,**
**Կատուն քայլում է**
**Վստահ ու հպարտ,**
**Արևը ժպտում է**
**Երեկվա նման,**
**Իսկ ես էլ նստել**
**Ու լուռ նայում եմ**
**Արթնացող օրվան...**

# ՎԵՐՋԻՆ ԶԱՆԳԸ

**Հեռանում են մեր դպրոցից**
**Մեր սիրելի ավագները,**
**Հրաժեշտի խոսք է հնչում**
**Եվ հնչում են զանգակները:**

**Հրաժեշտ են տալիս նրանք,**
**Սպասելով նոր հանդիպման,**
**Իսկ մենք կանգնել նրանց կողքին**
**Ու տխրում ենք նրանց նման:**






Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Նոր տարվա տոնական գիշերը, երբ Կրեմլի ժամացույցը իր զարկերով ազդարարում է նոր տարեմուտը, մարդիկ, սովորաբար, ապրածի արդյունքն են ի մի բերում, և նրանց սրտերում լավագույն ապագայի հավատն է առկայծում: Ձեզ համար, երեխանե՛ր, Նոր տարին բազմագույն գնդերով և շողշողացող օձաժապավեններով ու ծաղկաշղթաներով տոնականորեն զարդարված եղևնին է, Ձմեռ պապի նվերները, թատրոններում և կուլտուրայի պալատներում կազմակերպվող ցերեկույթները և ձմեռային ուրախ արձակուրդները:

Շատ երկրներում տարբեր ժամանակ և տարբեր ձևով են դիմավորում Նոր տարին: Ձմեռ պապիներն էլ տարբեր են: Իտալիայում Ձմեռ պապին անձրևանոցով է շրջագայում, որովհետև այս երկրում Նոր տարուն ավելի անձրև է գալիս, քան՝ ձյուն: Եվրոպայի հյուսիսային երկրներում տոնի առթիվ երեխաներին շնորհավորում է Թրոլլը՝ սկանդինավյան ֆոլկլորի ամանորյա գործող անձը: Դրանք նաև Բարի տիկնայք են՝ հրաշագործ փեաները, որոնք մոքրիկ Քոզեթին (հիշեք Հյուգոյի «Թշվառները» վեպը) նվերներ են տալիս: Իսպանիայում սուրբ Սատարինեն Նոր տարվա գիշերը հսկայական անիվի վրա նստած՝ թռչում է և լուսամուտագ գերին նվերներ է թողնում երեխաներին: Եվ բոլորին քաջ հայտնի Սուրբ-Քլաուսը, որի տոհմածառը XII դարից է սկիզբ առնում...

Երկիր մոլորակի յուրաքանչյուր չորրորդ մարդը երեխա է: Եվ բոլոր երեխաները, որ երկրում էլ ապրելիս լինեն, մաշկի ինչ գույն էլ ունենան, հավատում են հեքիաթին, բաց[illegible]ղեմ Ձմեռ պապի բարի հրաշքներին: Հավատում են և նրա օգնությանը դիմում: Բայց նրանց սրնդրանքներն այսօր հաճախ հեռու են հեքիաթի կախարդանքից, նրանք ավելի մոտ են իրական կյանքին: Ֆրանսիայի և ԱՄՆ-ի երեխաների նամակներում մենք կարդում ենք՝ «Սուրբ-Քլաուս, օգնիր հայրիկին աշխատանք ճարել», «Տիկնիկ եմ ուզում, բայց ոչ՝ ռումբ»: Իսկ ինչու՞ ռումբեր:

Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտը և Պենտագոնի ռազմամոլները աշխարհի բոլոր երեխաներին չարագուշակ նվեր են պատրաստել: Հրաման է ստորագրված ամեն կենդանի արարածի լայն մասշտաբով մահ բերող նեյտրոնային ռումբի արտադրության մասին: Նույնիսկ ծառերն են ոչնչանում այդ ռումբի մահաբեր ճառագայթներից: Բայց չէ՞ որ եթե ռազմական նպատակներին նետված հսկայական միջոցները օգտագործվեին թշվառության եզրին կանգնած երեխաների կյանքի բարելավմանը, ամեն մի երեխա կապիտալիստական երկրում կստանար օրական 5-ական դոլլար: Դա միանգամայն հերիք է Ամերիկայի, Աֆրիկայի և Ասիայի շատ երկրների միլիոնավոր երեխաների կյանքը փրկելու համար:

Մինչդեռ այժմ աշխարհում ամեն մի մարդու, ներառյալ երեխաներին, 15 տոննա մահաբեր պայթուցիկ նյութի պաշար է բաժին ընկնում: Պատկերացրեք երեք հինգտոննանոց բեռնատար, լիքը բեռնավորված տրոտիլով, և այդ ամենը մի երեխա սպանելու համար: Ինչու՞: Բանական մարդուն դա անհասկանալի է:

Մեր կուսակցությունը և կառավարությունը տարեցտարի հետևողական պայքար են մղում աշխարհում խաղաղության ամրապնդման, երջանիկ մանկության համար: Մեր երկրում մենք նորանոր դպրոցներ ենք կառուցում, պիոներների պալատներ, ուսումնական կոմբինատներ, սպորտային համալիրներ, պիոներական ճամբարներ և այլն: Մանկությունը պետք է երջանիկ լինի, երեխաները պետք է ծիծաղեն:

ՏԱՏՅԱՆԱ ԻՎԱՆԵՆԿՈ

ՎԱՆՈ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ

# ՑԱՎԸ ԵՐԿՈՒ ԵՐԵՍ ՈՒՆԻ



Իմ տարիքին չէր, կլիներ ինը-տասը տարեկան, ինձ ի՞նչ էր արել. կարծեմ թե բան չէր արել, բայց ձեռս գնաց, այն է՝ հասցնելու էի վզակոթին, նա վիզը ծռեց, ինքը ծռըվեց և մի անպաշտպան, խեղճի այնպիսի հայացք վրաս հառեց, որ ձեռս քարացավ մնաց, խղճահարությունը իմ մարմինը վերից վար կտրեց, այնպես կտրեց, որ դրա ցավը քսան տարի կրծքիս տակ է, այդ պատկերը այսքան տարի աչքիս առաջ է:

Փոշո՜տ, զզվելի ճանապարհ էր: Քանոնի նման ուղիղ, անպատրանք, սովածացնող մի ճանապարհ: Ոլորան չկար, որից դենը մի բան սպասվեր, որից դենը մեր տունը երեվար, անակնկալ մեր առաջը գար, մի ձոր, մի բլուր հաշվեինք՝ պրծներ: Մեր տները աչքի առաջ էին ճանապարհի հենց սկզբից, բայց ձմեռները ծխնելույզներից ելնող ծուխը մեզ չէր տաքացնում, ծխի ակունքում ակընկալվող կերակուրը մեզ չէր կշտացնում: Դա մեր դպրոցի ճանապարհն էր: Մեր ծնողների աչքը մեր ճանապարհին էր, բայց նրանց սերն ու սպասումը մտահոգ էր: Նրանք մըտմըտում ու չէին գտնում իրենք չունենալով մեզ մեծացնելու եղանակը ու նեղվում էին: Նըրանք թաքուն վախենում էին, որ իրենց անմեղ չկարենալը մի օր իրենց երեսով կըտանք, վախենում էին՝ չլինի թե նեղությունից մեր հոգիները որդը ու մեր սրտերը բորբոսը պատի: Նրանք չրտեին, բայց սիրտ չունեին իրենք իրենց խոստովանելու, թե մենք ինչքան էլ իրենցը լինենք, մեծ բնության զավակներն ենք ամենից առաջ: Իսկ բնությունը ողորմած էր: Նույնիսկ ձմռան անդտուղ-սպաղ հերմակության տակ, հողի սառած շերտից անդին նա՝ հոգացողը, գետնախնձորի պաշար էր պահում կրծողների, նաև մեզ համար: Իսկ գարունքից մինչև խոր աշուն հո՜ դրախտ էր մեր հովիտը: Այսպես մեծացանք,— մեր ծնողներին ու բնությանը փոխնիփոխ ապավինած գազանիկներ՝ կիսաքաղց-ազատհնարամիտ, եղածով՝ ուրախ, չեղածով՝ պինդ:

Ուղիղ կեսօր էր: Ժամը հիշում եմ, որովհետև մեր ստվերները ապավինել էին մեր ներբաններին, ու երբ նա ծռվեց՝ ստվեր գըցեց և այդ ստվերը ավելի խեղճ էր: Կանգնած էինք ճանապարհի (եթե դպրոցից գալու լինենք) աջ կեսին, հազար մետրանոց ուղիղ քանոնի այն կետի վրա, որը այսքան տարիներ անց թե գնսնք՝ մատնացույց կանեմ, եթե անգամ ճամփեզրի ընկուզենիները կտրտած լինեն, եթե անգամ հեռագրասյուները տապալած լինեն և կողմնորոշվե-

լու բան չունենամ բացի արևից: Եթե սխալվեմ, կսխալվեմ մեկ-երկու քայլ, այնքան որ այդ հարվածը ինձ ցմահ խփեց: Ահա այդ կետին՝ ինձանից թույլ, ինձանից փոքր այդ երեխան գլուխը ծռել, ինքը ծռվել էր, պայուսակը ճանապարհի փոշու մեջ էր, նրա մի ուսը բարձրացել էր գլխից էլ վեր և ահաբեկված, աղերսալի նրա հայացքը իմ աչքերից գնում էր ձեռիս, ձեռիցս ետ՝ իմ աչքերին... Այդ ակնթարթում նրա հայացքը քանի՞ անգամ գնաց ու եկավ, քանի՞ անգամ իր վախը չափեց, այսքան տարի ո՛նց է անդադար գնում ու գալիս և դեռ ինչքա՞ն է գնալու-գալու՝ ես չգիտեմ:

Ըստ երևույթին, ձեռս խփելու պատճառ չուներ, թեև բերանբաց լալկոտ էր նա, մի բան չէ՝ մի բան ասած կլիներ, կա՛մ բերանը ծռած կլիներ. կա՛մ լեզուն հանած կլիներ, և իմ ձեռը իմ տարիքի բարձունքից գնաց նրան պատժելու: Բայց խեղճությունը նրա պատիժն էր, և ձեռս օդում կախվեց մնաց:

Ես չխփեցի: Բայց ինչի՞ց է, որ մինչև օրս չեմ մոռանում: Ես այդ տղային ցավ չեմ պատճառել, բայց անօգնական նրա հայացքը ինձ ցավ է պատճառել: Երևի նրա ապրած սարսափը նույնպես ցավ էր, ավելի ցավոտ, քան եթե բուն ապտակը ճայթեր: Ստացվում է, որ ցավը երկու երես ունի, ինչպես ձեռքը՝ ափ ու ափերես, մեկով խփում ես, մեկն անդրադառնում քեզ է խփում: Անդրադարձ ցավը չի մոռացվում: Այդ ցավը, կարծես, իր սեփական կյանքն ունի: Քո մեջ ապրում է քեզանից անկախ: Թե չէ ինչի՞ց է, որ թե՛ դպրոցիս ճանապարհը հիշելիս եմ այդ ցավը զգում, թե՛, պատահում է, ցավը խոցում է անակնկալ և նոր աչքիս առաջ է գալիս այդ պատկերը: Իսկապես, ցավը իր ինքնուրույն կյանքն ունի: Ապրում է իմ մեջ ինձանից անկախ, մոռացնել է տալիս իրեն, բթացնում է զգոնությունս, մեկ էլ խփում է ձախ թիակիս տակ և ոտքիս տակից հողը գնում է:

Չեմ ասի, թե դրանից առաջ, դրանից հետո ձեռ չեմ տվել մեկնումեկին: Այն, ինչ խոսքը չի կարող ասել, ապտակն ասում է: Խուլ ականջը ապտակն է բացում: Նրանք բոլորը իրենց պատիժը ընդունել են տարբեր ձևով, բայց այդ տղայի հայացքն ուրիշ էր: Հաստատ խփելու պատճառ չկար: Լուրջ պատճառ չկար. և ձեռս գնաց համենայն դեպս, որ տարիքս նկատի առնեն: Նա անմեղ էր և իմ պատճառած ցավն ինձ էլ խփեց:

Խփեց ու մնաց իմ կրծքի տակ, որ ժամանակ առ ժամանակ ներսից խոցի:


Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ՀԱՐՑԱՍԻՐՈՒԹՅՈ՞Ւ՞Ն, ԹԵ...

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



Իմ հարցասիրության ձեռքից կրակն էինք ընկել ես էլ, շրջապատիս մարդիկ էլ:

— Հայրի՛կ, ինչու՞ է ձյունը սպիտակ, այլ ոչ՝ կարմիր կամ սև:

Հայրիկը այդ պահին նորոգում էր կոտրված աթոռը: Մեխը ծռվում էր, համառորեն չէր մտնում փայտի մեջ: Նա փորձում էր մեխը փայտի մեջ խրել: Չհարցնե՞մ, թե ինչու մեխը փայտի մեջ չի գնում: Բայց չէ՞ որ դրա պատասխանը ես գիտեմ: Փայտն ամուր է, ահա թե ինչու:

— Իսկ ինչո՞ւ է կետի կոկորդը մկան բնի չափ նեղ,— նորից հարց եմ տալիս ես:

— Հեռացի՛ր,— բղավում է հայրիկը,— դու ինձ զայրացնում ես:

Թողնում, դուրս եմ գնում, պտտվում բակում, քարկոծում թռչուններին, գնդակով խփում պատին... և ահա գլխումս ծնվում է մեկ ուրիշ հարց. «Ինչու՞ ես էլ ճնճղուկի պես չեմ թռչում...»

Այդ հարցով դիմում եմ մայրիկին, իսկ նա գազարը ավելի ուժեղ քսելով քերիչին, պատասխանում է.

— Նման հիմար հարց դեռ ոչ մեկի գլխում չի ծնվել: Դու մարդ ես, իսկ նա՝ թռչուն, ահա թե ինչո՛ւ:

Դասերս այդպես էլ չսովորած, այդ կիրակի օրով շարունակում եմ բակում թրևել: Ես անընկեր էի, բակում ոչ մեկը ինձ խաղընկեր չէր դառնում: Վախենում էին, թե հարց կըտամ և տակից դուրս գալ չեն կարողանա: Անունս էլ դրել էին Հարցասեր: Այդպես ահա, մարդ էի փնտրում, որ հարց տամ:

Վերջապես մեկին գտա: Արամն իրենց տան առաջ նստած՝ հեծանիվի ծռված անվաճաղն էր ուղղում: Մոտեցա: Նա դժկամությամբ ինձ նայեց: Քանի որ նրանից վախենում էի, մըտածեցի հարցն ինչպես տամ, որ չբարկանա:

— Արա՛մ,— ասացի,— իսկ գիտե՞ս, թե ինչու է ճնճղուկը թռչում...

— Մի՛ խանգարիր, չքվի՛ր,— ասաց նա:

— Իսկ ես գիտեմ:

— Գիտեցածդ քե՛զ պահիր,— փնթփնթաց նա:

Նստեցի կողքին, ձանձրույթից հորանջեցի մի քանի անգամ, մինչև որ զայրացավ:

— Քունդ տանում է, գնա քնի՛ր:

— Իսկ ինչո՞ւ է մարդու քունը տանում,— մոռանալով, որ իմ հարցը կարող է նրան զայրացնել, հարցրի ես:

— Իսկ ինչո՞ւ ես դու այդքան զահլա տանող,— բղավեց նա:

Ստիպված էի հեռանալ: Բայց մեկ էլ ինձ սկսեց անհանգստացնել մի ուրիշ հարց. «Ինչո՞ւ է մարդը հարցեր տալիս»:

Հաջորդ օրը դպրոցում այդ հարցով դիմե-

ցի մեր դասղեկ ընկեր Մուրադյանին:

— Իսկ դու ինչո՞ւ ես նորից առանց վզկապի դպրոց եկել,— հարցրեց նա:

Ես իսկույն ձեռքս տարա պարանոցիս, ամոթահար կախեցի գլուխս:

— Ահա,— ասաց ընկեր Մուրադյանը,— երբ կկարողանաս իմ հարցին պատասխանել, այդ ժամանակ ես էլ քո հարցին կպատասխանեմ:

Նրա հարցին պատասխանելն այնքան էլ դժվար չէր, քանի որ մինչև այդ էլ ստիպված էի եղել մի քանի անգամ պատասխանել:

— Մոռացել եմ,— ասացի:

— Իսկ ինչո՞ւ ես մոռացել,— հետևեց երկ-վզկապդ արդուկիր, դեռ չեմ հարցնում, թե արդյոք դասերդ սովորե՞լ ես:

— Որովհետև,— նորից կմկմացի ես,— որովհետև...

Չէի համարձակվում ասել, որ անբարեխիղճ եմ, որ իր դիտողություններից եզրակացություն չեմ անում, որ գլուխս կարևոր ու անկարևոր հարցերով լցրած՝ սիրում եմ աքլորավարի քայլել, մինչդեռ որևէ նոր բան ինքնուրույն սովորել չեմ սիրում:

— Տեսնու՞մ ես,— ասաց ընկեր Մուրադյանը,— դժվարանում ես պատասխանել: Դե, ուրեմն լսի՛ր ինձ. պետք է իմանալ, թե որտեղ, երբ և ում ինչ կարելի է հարցնել: Բայց




րորդ հարցը:

— Որովհետև,— կմկմացի,— որովհետև արդուկված չէր:

— Իսկ ինչո՞ւ չէիր արդուկել,— հարցրեց ընկեր Մուրադյանը:

Նա այնպես սևեռուն էր նայում, այնպես ամուր էր կանգնել իմ դիմաց, որ անկարող էի նրա կողքից ծլկել: Դասի զանգը հնչել էր, աշակերտները դասարաններն էին շտապում, միջանցքը դատարկվում էր, իսկ ընկեր Մուրադյանը տեղից չէր շարժվում:

— Դե, պատասխանի՛ր,— համառեց նա,— ամբողջ կիրակի օրը մի՞թե բավական չէր, որ ավելի լավ է, ինքդ քեզ ավելի շատ հարց տաս, քան՝ ուրիշներին:

Նա ձեռքը մտերմորեն ուսիս դրեց և առաջնորդեց դասարան:

Այստեղ ես համարձակություն ստացա ու հարցրեցի.

— Իսկ ի՞նչ հարց տամ ինքս ինձ, ընկե՛ր Մուրադյան:

— Հարցրո՛ւ՝ ինչո՞ւ վզկապ չեմ կապում, ինչո՞ւ եմ դպրոց գալիս դասերս չպատրաստած, ինչո՞ւ եմ անմիտ-անմիտ խոսում, ինչո՞ւ եմ անմիտ արարքներ թույլ տալիս... Եվ քո հարցերին աշխատիր պատասխանել ինքդ...

# ՄԻ ԿՏԱՎԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ



Երևանի պետական պատկերասրահում ուշադրությունըս գրավեց մի կտավ, որի հեղինակը հանրահայտ նկարիչ Հովհաննես Զարդարյանն է: Նկարում հայ, ռուս բարեկամներն են, որոնք ասես լեռնացել են Սևանհէկի շինարարության ֆոնի վրա: Նրանց հայացքներում աշխատավոր մարդու ուժն է, արարելու բերկրանքը: Կտավը դիտելիս ինձ ծանոթ թվաց հայ մարդու դեմքը, հիշեցի, մեր հարևանն է՝ Սերգեյ Թովմասյանը:

Գնում եմ Սերգեյ պապի տուն: Ծերացել է, բայց հայացքում նույն վճռականությունն է, շարժուձևում և խոսքում նույն երիտասարդական եռանդը: Նրա ամբողջ կյանքը պայքար է եղել լույսի համար: Մասնակցել է Հայաստանի բոլոր հիդրոէլեկտրակայանների շինարարությանը՝ իր աշխատանքային հաղթարշավը ավարտել է Արփա—Սևանում: Նրան խնդրեցի պատմել, թե ինչպես է ընտեղծվել Զարդարյանի կտավը:

— Դա Սևանի ստորգետնյա հիդրոէլեկտրակայանի շինարարության ժամանակ էր: Ես ղեկավարում էի հորատողների կոմերիտական-երիտասարդական բրիգադը: Լավ տղերք էին՝ աշխատող, խիզախ, դժվարություններից չվախեցող: Մի կենտուրախ տղա կար մեր բրիգադում: Դուդուկ էր բերում հետը և փոքր դադարների ժամանակ նվագում էր: Աշխատանքի պահին էլ երգում: Երգը միշտ նրա հետ էր: Ասում էր՝ երգով հեշտ է աշխատել:

Նա գնում է հուշերի ետևից:

— Հա՛, հիմա ասեմ կտավի մասին: Մի օր եկան, թե քեզ ուզում են նկարել...

Երբ Սերգեյ պապը թունելախորշից բարձրանում է վերև, ծանոթացնում են նկարիչ Զարդարյանի հետ: Եվ նա իր ընկերոջ՝ Վ. Մեգովի հետ պատրաստվում է նկարվելու՝ կարծելով, թե պարզապես պիտի ուսանկարեն և դա այնքան էլ ժամանակ չի խլի իրենցից: Բայց երբ իմանում են, որ յուղաներկով են նկարելու, մի քիչ սրտնեղում են: Ախր այնտեղ՝ թունելախորշում, ընկերները աշխատում են, իսկ իրենք ժամերով պիտի անշարժ կանգնեն նկարակալի առաջ:

— Այդ բոլորը մի կողմ, — շարունակում է Սերգեյ պապը,— հիմա էլ թե՝ իջնենք թունելախորշ: Ա՞յ մարդ, նկարելու ես, նկարի՛ր,— դիմում եմ Զարդարյանին: Իսկ նա, թե՝ իջնենք, հա իջնենք:

Իջնում են թունելախորշ: Զարդարյանը երկար ժամանակ դիտում է իրենց աշխատանքը: Որից հետո նրանց հրավիրում է վերև ու նոր սկսում նկարել: Երեք ամիս է տևում նկարչի աշխատանքը:

— Բայց մի գաղտնիք կա կտավում, որ միայն ես ու Զարդարյանը գիտենք,— խորամանկորեն աչքերը կըկոցում է Սերգեյ պապը:

— Ի՞նչն է, Սերգե՛յ պապ, ասացեք, ձեզ չեմ մատնի, — նույնքան խորամանկորեն ժպտում եմ ես:

Պարզվում է, որ նկարում Ս. Թովմասյանի ձախ ձեռքի փոխարեն նկարվել է Վ. Մեղովի ձեռքը: Աշխատանքի պահին թունելախորշում Սերգեյ Թովմասյանը չի զգացել վերելակի ցած իջնելը: Հազիվ է փրկվում վերջին պահին, բայց ձախ ձեռքը մնում է վերելակի տակ, և խեղվում են ձեռնափի ոսկորները: Զարդարյանը չի ցանկանում նկարել անվանի թունելագործի խեղված ձեռքը և նրան փոխարինել է Մեղովի ձեռքը: Խորհրդանշական է, որ այդ կտավը կոչվել է «Բարեկամություն»:

... Դարեր շարունակ մեզ բարեկամության ձեռք է մեկնել ռուս ժողովուրդը.. 1949 թվականին, երբ նկարվում է այս կտավը և շահագործման է հանձնվում Սևանհէկը, Ս. Թովմասյանը պարգևատրվում է Լենինի շքանշանով: Եվ միայն տարիներ հետո է նա իմանում, որ այդ կտավը ցուցադրված է Երևանի պետական պատկերասրահում...

**ՆԱԻՐԱ ԱՌԱՔԵԼՅԱՆ**

Սևանի № 2 դպրոց, 7-րդ դաս. աշակերտուհի

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ



# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

Քիմիական գիտությունների թեկնածու, Հայաստանի լենինյան կոմերիտմիության դափնեկիր Էդվարդ Սարգսյանը, որի մասին ընդարձակ ակնարկ տպագրվեց մեր ամսագրի 1981 թ. № 10-ում, խմբագրության խնդրանքով ակնարկաշար է գրել այն մասին, թե ինչպես սկսեցին ինքն ու իր ընկերները հրապուրվել ալպինիզմով, ապա և նվիրվեցին Հայաստանի քարանձավների ուսումնասիրությանը և հայտնաբերեցին Եղեգնաձորի այնքան մեծարժեք քարանձավները: Էդ. Սարգսյանն ու նրա ընկերները շարունակում են Հայաստանի քարանձավների ուսումնասիրությունը, և առջևում, ով գիտե, թե դեռ քարանձավների ի՞նչ հրաշք դռներ են բացվելու նրանց առջև:

Այս համարից սկսած տպագրում ենք Էդվարդ Սարգսյանի վերը հիշված ակնարկաշարը:

## 1. ԻՐԻԿՆԱՅԻՆ ՈՒՇԲԱՅԻ ԴԻՄԱՑ

Ամառային մայրամուտ էր: Հոգնած նըստել ենք ուսապարկերի վրա և հանգստանում ենք: «Դեռ ինչքա՞ն պետք է բարձրանանք»,— մտածում եմ ես ու նայում շրջակա լեռներին: Հանկարծ աչքս ընկավ Ուշբայի վրա ու ես ցնցվեցի. այս ի՞նչ հրաշք էր:

Մայրամուտի արևը ներկել էր Ուշբայի հավերժական ձյուները ու թվում էր, թե կապույտ մշուշի միջից երկինք է նետվում վիթխարի տիեզերական խարույկի բոցեղեն լեզուն ու կախվում օդում: Թվում էր, թե հեռու հեռվից դեմքդ այրվում է նրա տաք շնչից ու դու սպասում ես, որ ահա ուր որ է այդ բոցը կպոկվի երկրից ու կգնա ճախրելու տիեզերքում և դու կմնաս մենակ ու լքված:

Իրիկնային աղջամուղջում թրթռում է կարմիր Ուշբան, մինչև կամաց-կամաց աղոտանում են գույներն ու գիշերային խավարում նա սկսում է փայլել կապույտ ցոլքով: Հետո Ուշբայի թիկունքից դուրս է գալիս Արուսյակ-Վեներան ու թառում նրա գագաթների միջև: Ասես՝ Ուշբան լեռ չէ, այլ այդ կապույտ մոլորակի պատվանդանը:

Աննկատ թարթվում է աստղը, և կարծես թե Ուշբան կենդանանում է, աչքով է անում քեզ ու կանչում իր գիրկը: Աստղի կապույտ լույսը խառնվում է Ուշբայի ցոլքերին ու, թվում է, իրիկնային լեռներում ծագում է մի կապույտ արև:

Այդ կապույտ լույսը լուսավորում է լեռներն ու սառցադաշտերը, և դու հանկարծ ուշքի գալով զգում ես, որ դու ես այդ լեռների տիրակալը և քոնն են ամեն ինչ՝ լեռները, սառույցներն ու ձյուները: Դու քեզ ըզգում ես անպարտելի ու անսահման երջանիկ և ցավում ես նրանց համար, ովքեր չեն կարող վայելել այդ վերերկրային գեղեցկությունը: Այն մատչելի է միայն ալպինիստներին՝ նրանց, քամուց ու ցրտից այրված դեմ-



քերով և պողպատե կամքով այդ կենսախինդ մարդկանց: Միայն նրանք են համարձակվում դեմ գնալ դարավոր ասացվածքին՝ «Խելոքը լեռը չի բարձրանա, խելոքն այն կշրջանցի»: Իսկ նրանք ոչ թե շրջանցում, այլ անցնում են նրա դժոխային երթուղիներով: Դժվար է ասել, թե ինչու: Մի ներքին մղում ալպինիստներին տանում է դեպի երկնահաս լեռները: Դա մի զգացում է, որ ապրում ես, երբ անհամար վտանգները հաղթահարելո՜վ, հաղթահարելո՜վ, կանգնում ես լեռան գագաթին՝ ոտքիդ տակ թավալվող ամպերից բարձր: Այդ պահին դու քեզ զգում ես բոլորից ուժեղ և անխորտակ: Վայելում ես լեռների հեքիաթային գեղեցկությունն ու աչքերդ լցվում են երջանկության արցունքներով: Այդ արցունքների համար արժե վտանգել կյանքը...

## 2. ՄԱՐԶԻՉՆԵՐԻ ԴՊՐՈՑՈՒՄ

1975 թվին ես ընդունվեցի ալպինիզմի մարզիչների համամիութենական դպրոցը: Շատ դժվար եղավ դրան հասնելը: Մարդիկ հաճախ հարցնում են, թե ինչու ալպինիստները դանդաղ են բարձրանում վարպետության աստիճաններով: Նրանք չգիտեն, որ ալպինիզմով կարելի է զբաղվել միայն տարվա ամենատաք ամիսներին, այն էլ միայն այնտեղ, որտեղ կան ալպինիստական տեսակետից հետաքրքրություն ներկայացնող սարեր՝ Կովկաս, Պամիր և Տյան-շան: Ուրեմն պետք է ամբողջ տարին կատաղածի նման մարզվել հանուն ամառվա այդ մեկ կամ ամենաշատը երկու (եթե ժամանակ գըտար) ամիսների: Բայց ահա, ասենք թե, լավ մարզավիճակով գալիս ես ճամբար, իսկ այստեղ պատահում է, որ եղանակները այնքան աննպաստ են լինում, որ լեռների փըրկարար ծառայությունը փակում է երթուղիները: Կամ էլ այնպիսի ջոկատ ես ընկնում, որի կամ անդամները են թույլ լինում, կամ էլ չեն կարողանում լեզու գտնել իրար հետ, որովհետև այն փոքրիկ թերությունները, որոնցից ոչ մեկս զերծ չենք, մահաշունչ լեռներում, որտեղ մարդկանց նյարդերը լարված են մինչև վերջին թելը, դրանք թվում են անհանդուրժելի արատներ: Եվ ահա գըժտություն է ծագում, և դու ստիպված ես լինում նստել ճամբարում ու մինչև վերջին օրը կարտոֆիլ կլպել:

Բայց, ասենք թե, խումբն արդեն կազմըված է, ամեն ինչ ձեր ուզածի պես է: Թվում է, թե հիմա կսկսեք իրար ետևից նվաճել

լեռները: Եվ մեկ էլ տեսար, մի դժբախտ դեպք պատահեց և բոլոր վերելքներն անմիջապես արգելվեցին:
Սրանք, այսպես ասած, ընդհանուր կարգի դժվարություններ են, բայց չէ՞ որ դրանց գումարվում են նաև ամեն տեսակի վնասվածքները: Օրինակ, երբ Էլբրուսի վրա մատներս ցրտահարվեցին, ինձ թվաց, թե վերջ ալպինիզմին, որովհետև ձմռանը ձեռքերս ձեռնոցներով մտցնում էի գրպաններս ու մատներս անընդհատ ցավից տրորում, զսպելով անզորության արտասուքներս: Պահանջվեց երկու տարվա ամենօրյա բուժում սագի յուղով, մինչև որ ես կարողացա կրկին չվախենալ լեռներում ցրտահարվելուց:
Մարզիչների դպրոցը գտնվում էր Էլբրուսի ստորոտում: Նրա պետը սովետական նշանավոր ալպինիստ Կիրիլ Բարովն էր, այն լեգենդար ջոկատի առաջնորդը, որն առաջինն էր անցել «Ուշբայի խաչ» աշխարհահռչակ երթուղին:
Դպրոցում ես ամենակրտսերն էի՝ քսանհինգ տարեկան: Ինձ նշանակեցին մի ջոկատում, որի անդամները վեց հոգով չորս ազգ էին ներկայացնում. հայ, ռուս, լեհ, օսեթ:
Դպրոցի կուրսանտները հավաքվել էին երկրի ամենահեռավոր ծայրերից: Ուժեղ ու խիզախ տղաների այդպիսի համախմբություն ինձ այլևս չհաջողվեց հանդիպել: Այդտեղ ես առաջին անգամ ծանոթացա «կաշի քերթողների» հետ, որոնց զարմանալի ցատկերի մասին արդեն մի քանի տարի էր խոսում էին ալպինիստների շրջանում, համեմատելով մեքսիկական կլավդիստների հետ: Նրանք՝ այդ կլավդիստները, լուսարձակների վառ լույսի տակ ծովն են ցատկում 30 մետր բարձրություն ունեցող նեղ ժայռերի արանքով: Ցատկում են նաև առանց լուսարձակների լույսի, ջահերով, անդունդի ծուռումուռ ոլորաններում՝ խուսափելով ժայռերի ցցվածքներից:
Բայց ի տարբերություն կլավդիստների, մեր «կաշի քերթողները» ցատկում են ոչ թե փողի, այլ սեփական հաճույքի համար: Մերոնք ուրիշ տեխնիկա ունեն. հագնում են մի քանի բամբակած բաճկոններ ու շալվարներ, հետո ընտրելով ժայռերի միջև եղած նեղ ճեղքերը, ոտքերի վրա ցած են թռչում 30—40 մետր բարձրությունից: Անդունդն ընկնելով՝ նրանք տեղ-տեղ սահում անցնում են իրար մոտեցած ժայռերի արանքով: Օդ են թռչում պատառոտված հագուստների ծվեններն ու բամբակը, բայց դրա փոխարեն մի քանի անգամ հարվածվելով՝ նրանք ողջ-առողջ հայտնվում են գետնին: Թվում է, թե ամեն ինչ պարզ է, բայց տղա ես, փորձիր կրկնել:
Դպրոցում մի քանի օրվա տեսական պարապմունքներից հետո բարձրացանք լեռները, որպեսզի այնտեղ շարունակենք պարապմունքները ժայռերի, սառույցի ու ձյան վրա: Ժայռերի վրա հենց առաջին օրը տեղի ունեցած փորձանքը քիչ մնաց խաչ քաշեր իմ մարզչական ճանապարհի վրա: Ես որոշել էի ցույց տալ մյուս կուրսանտներին, թե ինչպես է մագլցում Հայաստանի ու Երևանի ժայռամագլցման չեմպիոնը: Թափով բարձրացա մինչև ժայռի կեսը, աջ ձեռքս մեկնեցի ու վեր հրվեցի: Հանկարծ նույն ակնթարթին զգացի, որ թևս ուսից դուրս ընկավ: Ես մի ակնթարթ մնացի ձախ ձեռքից կախված, հետո զգացի, որ այդպես երկար չեմ դիմանա, օրհասական ճիգով ձախ ձեռքս մինչև արմունկը խցկեցի ճեղքի մեջ ու սեպվեցի, մնացի: Անմիջապես բերանս ցամաքեց ու ես խմելու մի այնպիսի անհաղթահարելի ցանկություն զգացի, որ ցավից խելագարված փորձեցի արձակել պարանները ու ցած թռնել. ինձ թվաց, թե ներքևում ջուրն ինձ է սպասում: Լավ էր, ներքևից գոռգոռացին, ուշքս տեղը եկավ: Հետո, մինչև իրար խառնված տղաները նետվեցին դեպի ժայռը, ես շունչս տեղը բերի ու մի կերպ քարափը ձախ ձեռքով ճանկռելով՝ բարձրացա ժայռի գլուխը: Ինձ թոցրին դպրոցի բժշկի մոտ: Նրա հրամանով ինձ դրեցին քարերի վրա, երկու աժդահա նստեցին վրաս, երրորդը ոտքը կրծքիս դրած սկսեց ամբողջ ուժով ձգել ձեռքս, իսկ բժիշկը չոքած աշխատում էր ձեռքս տեղը գցել: Վերջապես ինձ էլ, իրենց էլ չարչարելուց հետո, խախտված հոդը տեղը գցեցին ու ես ուժասպառ քուն մտա:
Աչքերս երբ բացեցի, մտածեցի, որ այդ օրը վերջինն է լինելու իմ ալպինիստական կյանքում: Ինչպե՞ս էի մագլցելու լեռները, եթե ձեռքս կարող էր կրկին դուրս ընկնել: Առանց այն էլ դա իմ երկրորդ հոդախախտումն էր:
Մայրամուտին, երբ դպրոցը տողան կանգնեց սառցադաշտերի դիմաց, ես որպես օրվա հերթապահ մոտեցա ու զեկուցեցի.
— Ընկե՛ր դպրոցի պետ, իմ հերթապահության ժամանակ պատահարներ տեղի չեն ունեցել:— Հանկարծ իմ թիկունքում պայթեց կուրսանտների քրքիջը: Տղաները ծիծաղից խեղդվում էին: Կիրիլ Ալեքսանդրովիչը ինքն էլ ծիծաղեց ու վիրակապված ձեռքս ցույց տալով՝ ասաց.
— Ընկե՛ր կուրսանտ, բա դա պատահար չէ՞:



Դպրոցի ղեկավարությունը որոշեց ինձ տուն ուղարկել, խոստանալով հաջորդ տարի կրկին հրավիրել։ Բայց ես չհամաձայնվեցի ու իմ երկար թախանձանքներից հետո, որոշեցին թողնել դպրոցում։

Մի շաբաթ ձեռքս կրծքիս կապած ես տըխուր-տրտում շրջում էի ժայռերի մեջ։ Հետո վիրակապը արձակեցին։ Իմ բախտից դպրոցի բժիշկը հռչակավոր վիրաբույժ էր։ Նա նույնիսկ մի քանի պատմվածքների հերոս էր դարձել։ Այդ նա էր, որ իր հորինած մեթոդով վերակենդանացրել էր քսանչորս ժամ ձնահյուսի տակ մնացած ալպինիստին։ Դա այն կախարդ բժիշկն էր, որին շատերն են հանդիպել՝ «Իմ սիրտը լեռներում է» ալպինիստական պատմվածքների ժողովածուի էջերում։

Յուրի Յակովլևիչը տեսավ, որ շատ եմ ընկճված, ինձ պատմեց մի հայտնի ալպինիստի մասին, որը ինձ նման խրոնիկական հոդախախտում է ունեցել, բայց իր նշանակած ֆիզիկական վարժություններով կարողացել է այնքան ուժեղացնել ուսի մկանները, որ դրանք հուսալիորեն պահել են հոդը։ Ու այդ ալպինիստի բոլոր նվաճումները եկել են դրանից հետո։ Պատմեց նաև դպրոցի հին մարզիչ Գուստավի մասին, որի անունով մոտակա սրածայր ժայռը կոչվում էր Գուստավ շպից (ասեղ)։ Նա պատերազմում կորցնում է ձեռքը։ Դպրոցում նրանից լավ ոչ ոք չէր մագլցում։ Ա՜յ քեզ մի նոր Մերեսև։

Դպրոցի բժշկի խորհրդով, ես սկսեցի ձեռքիս հոդը ամրացնել վարժություններ կատարելով։ Միաժամանակ ապահովության համար որոշեցի սովորել մագլցել միայն ձախ ձեռքով։ Մագլցել ոչ թե բոլորի նման, այլ միայն ձախը բարձրացնելով, իսկ աջը միշտ պահելով ավելի ցած։

Այդ մեթոդին հետևելով ինձ կրկին հաջողվեց շարք մտնել։ Դպրոցում կյանքը շարունակվում էր իր հունով։

Այդ օրերի ամենահիշարժան դեպքերից մեկը դպրոցի փրկարար ծառայության պետի գլորվելն էր սառցաճեղքի մեջ, երբ մեզ բացատրում էր, թե ինչպես պետք է խուսափել սառցաճեղքի մեջ ընկնելուց։ Դեռ ոչ մի գլորվածի այդպիսի հռհռոցով դուրս չէին քաշել, ինչպես մենք նրան դուրս քաշեցինք։

Երկրորդը՝ մի տարօրինակ հանձնարարություն էր, որ ես ստացա ճամբարի պետից։ Նա ինձ կանչեց իր մոտ ու կարգադրեց.

— Կուրսա՛նտ Սարգսյան, ե՛ս ուզում եմ, որ դու մի խաչքար սարքես, տեսնեմ դա

ինչ բան է, շատերն են գովում:

— Ընկեր դպրոցի պետ,— շվարեցի ես, — ես ոչ քարտաշ եմ, ոչ էլ խաչքար սարքելն այդքան հեշտ է:

— Գիտեմ,— չզիջեց նա,— բայց դու փորձիր սառույցից սարքել:

Նա ինձ օգնականներ տվեց, ու ես դրանց հետ մի մեծ սառցակալած ձյան բեկոր գտա, սկսեցի տաշտշել: Մի մեծ հարթ սալ սարքեցինք, որի վրա ես պողպատե սեպով գծեցի ապագա խաչի գծանկարն ու սկսեցի սառցաքլունգով տաշել: Մյուս կուրսանտները, որ այդ օրերին զբաղված էին սառույցից էսկիմոսական «իգլու» կոչվող կացարաններ սարքելով, րոպեն մեկ վազում էին մեր «արվեստանոցը»:

Վերջապես իրիկնադեմին իմ անարվեստ խաչքարը պատրաստ էր և ամբողջ դպրոցը պետի գլխավորությամբ հավաքվեց նրա գլխին: Կիրիլ Ալեքսանդրովիչը նայեց, նայեց ու ասաց.

— Իսկապես որ դուք զարմանալի ժողովուրդ եք, եթե այսպիսի զարմանալի բաներ եք սարքում:

Տղերքն էլ հավանեցին ու մի գլուխ լուսանկարվում էին սառցաժայռերի ֆոնի վրա ցցված խաչքարի կողքին: Միայն վրացի տղաներն էին, որ քիթները վեր էին քաշում.

— Սա ի՞նչ է որ, եկեք ձեզ Հայաստան տանենք, տեսեք իսկական խաչքարերն ինչպիսի՜ն են լինում:

Նրանց այդ արհամարհանքը ինձ համար ամեն տեսակ գովեստից վեր էր: Ինձ համար, որ ձեռքս նոր էի հանել վիրակապից, ամենամեծ փորձությունը Ուշբայի սառցահոսքի վրայով կատարած արշավն էր դեպի Ուշբայի սարահարթը (4200 մ): Արդեն ամառվա կեսն էր, և բացվել էին սառցաճեղքերի կապույտ երախները, իսկ ամեն վայրկյան փլվող վիթխարի սառցալեռները սպառնում էին իրենց տակ թողնել նրանց, ովքեր կանգնեին դրանց արանքով: Բարեբախտաբար ամեն ինչ հաջող անցավ՝ մի ավելորդ անգամ հաստատելով մարզիչների դպրոցի հպարտ նշանաբանը. «Այնտեղով, որտեղով ոչ ոք չի անցնի, մարզիչների դպրոցը կանցնի իր ամբողջ կազմով»:

Վերջապես ավարտեցի դպրոցը: Հանձնելով քննությունները ու վկայականները վերցնելով, սովետական ալպինիզմի 53 նորաթուխ հրահանգիչներս ցրվեցինք երկրով մեկ, մեզ հետ տանելով քաղցր հուշեր այն դժվարին օրերի մասին, որ մենք անցկացրինք Բաքսանի դպրոցում, կամ ինչպես կուրսանտները կատակով անվանում էին «բարոկամերայում»:

# ՋՐՈՒՄ

ԳՐԻԳՈՐ ՄԱՔՄԱՆՅԱՆ

Ջրի խո՛ր խորքում
Ամեն վառ գարուն
Սարի աղբյուրը
Երգում է անքուն:
Ովքե՛ր են լսում
Նրա կարկաչը.
Հավքերը սարի,
Բացվող կանաչը...
Մեկ էլ հեղեղն է
Վեր կացած գալիս,
Աղբյուրն իր տեղը
Կորցնում է, լալիս...
Տիրում է քիչ անց
Խոր անդորր ձորում,
Ու այնտեղ դարձյալ
Երգեր են ծորում:
Մինչև ուշ աշնան
Գույներն են թռչնում,
Ջրում ամեն ձայն
Մարում է, լռում,
Միայն աղբյուրն է
Երգում մեղմաձայն:
Հետո իջնում են
Փաթիլներ արծաթ,
Ջուրը լցվում է
Լռությամբ ճերմակ:

Սիրելի՛ պատանիներ՝ տղաներ ու աղջիկներ.

Դուք ձեր ավագների զրույցներից զգում եք, թե ինչպիսի կարոտով են նրանք հիշում իրենց մանկությունը, իրենց ծնողներին, իրենց տունը, ընտանեկան այն հարկը, որի տակ մեծացել են: Յուրաքանչյուր մարդ, անչափահասն առավել ևս, ժամանակի զգալի մասն անցկացնում է տանը, և նրա դրսի վարքագիծը՝ դպրոցում, փողոցում, հասարակական վայրերում, հյուր գնալիս, իր հետագա կյանքի և աշխատանքի մեջ, շատ է պայմանավորված նրանով, թե տանն ինչ մթնոլորտ գոյություն ունի: Ընտանիքի ամեն մի անդամ, մեծ թե փոքր, կրելով ընտանեկան մթնոլորտի ազդեցությունը, միաժամանակ իր հերթին ազդում է ընտանեկան մթնոլորտի վրա, նպաստում, որ այնտեղ իշխի ցանկալի խաղաղությունը, կարգուկանոնը, փոխադարձ սերն ու հոգատարությունը և կամ՝ հակառակը:

Հրավիրում ենք մեր ընթերցողներին ամսագրի էջերում զրույց բացել այդ հարցերի շուրջը: Նպատակահարմար ենք գտնում զրույցն սկսել մեր ընթերցողների շարադրություններով՝ գրված «Մեր ընտանիքը», «Մեր ընտանեկան հարկի տակ» թեմայով:

Տպագրում ենք այդ թեմայով արդեն իսկ մեր ձեռքի տակ եղած շարադրությունները և սպասում ենք ձեր շարադրություններին, որ կարծում ենք չեք ուշացնի:

«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ




# ԵՐԵՆՔ

Մենք նստած ենք սեղանի շուրջը: Մենք՝ մեր ընտանիքը, հայրս, մայրս, ես և երկու քույրերս: Փոքր քույրս այսօր շատ է ուրախ, մայրս նրա համար բերել է Շառլ Պերրոյի հեքիաթները: Նրա համար դրանից մեծ երջանկություն չկա, ապրում է հեքիաթներում, ու ինձ թվում է, թե նա բոլոր հեքիաթների հերոսուհիներին էլ նման է՝ գեղեցիկ, պարզ ու անմիջական:

Մայրիկը հենց նոր հանել է կարմրած, բամբակի պես փափուկ ու թեթև գաթաները, որոնք աշխարհում ամենից լավ պատրաստում է մայրս: Մայրիկիս ամենից շատ սիրում եմ խմորը հունցելիս, որովհետև այնքան խորհրդավոր ու ժպտալով է ձեռքերը դուրս քաշում պինդ խմորի միջից: Թեյից հետո հայրս կնստի սեղանի առջև ու ձեռքը կառնի կարմիր գրիչը: Հայրս հայոց լեզվի և գրականության ուսուցիչ է: Նա իր աշակերտների համար Նարեկացի է կարդում, ու նրանք գրեթե հասկանում են: Երեկ, երբ նա նորից տետրեր էր ստուգում, կանչեց ինձ ու ցույց տվեց մի

շարադրություն՝ «Իմ երազանքը» թեմայով: Կարդալուց հետո այնպես էի ուրախացել, որ դասերս պատրաստելիս դժվարությամբ կենտրոնացա: Ես ավելի սիրեցի հորս: Բոլորն ասում են, որ հայրիկի նման եմ, ու ես ուրախանում եմ: Կարո՞ղ եմ, արդյոք, նրա պես ինձ նվիրել աշակերտներին ու թևեր տալ նրանց թռչելու համար:

Մեր ընտանիքն աշխարհի բոլոր, բոլոր ընտանիքներից ամենաերջանիկն է, որովհետև հիմա տաք թեյ ենք խմում ու իրար աչքերի մեջ նայելով՝ ժպտում ենք:

**ՆԱԻՐԱ ՄԱՐԳԱՐՅԱՆ**
Երևան, № 141 դպրոց,
9-րդ դասարան

# ԱՆԱՎԱՐՏ ԴԻՄԱՆԿԱՐ

Թվում է, թե հեշտ է գրել հարազատ ընտանիքի մասին: Բայց վերցնում եմ գրիչը ու անսպասելիորեն զգում, որ... ոչինչ չունեմ գրելու: Ու՞մ մասին գրեմ: Մեծ եղբո՞րս, որ այնքա՜ն գաղտնապահ է, օրերով բերանից բառ չի դուրս գալիս: Նա գաղտնիք է ինձ համար... Կարող եմ ավելացնել, որ ինստիտուտի երրորդ կուրսում է սովորում: Իսկ երբ դպրոցում էր սովորում, ուսուցիչները հոգիս հանում էին. «Աշխատիր նմանվել Սամվելին. այդպիսի եղբայր ունես, իսկ դու...»

Հորս նույնպես հեշտ չի հասկանալը: Եթե նա փորձի պարզություն և անկեղծություն սերմանել մեր մեջ, նրա խոսքերը կհնչեն անբնական: Երբ խոսք է լինում դպրոցական գնահատականների կամ արտասահմանյան երգեր լսելու մասին, շատ հայրեր սկսում են զայրացած գեղեցիկ խոսքեր ասել, բայց նրանցից քչերն են հետաքրքրվում մեր մտածմունքներով, հույզերով: Իմ հայրիկին երկու խմբերին էլ կարելի է դաշնակից համարել: Նա շատ անգամ է մտերմորեն զրուցում մեզ հետ, հետաքրքրվում մեր տխրության պատճառով, ու՞մ հետ ենք ընկերություն անում:

Մյուս եղբորս մասին գրելն ավելի հեշտ է: Չնայած նրան օրինակ չեն բերել դպրոցում և ոչ էլ ինստիտուտ է ընդունվել (սովորում է տեխնիկումում), բայց նա պարզ է և հասկանալի: Օրագիր է պահում, որտեղ կարելի է հանդիպել շատ հետաքրքիր միջադեպերի ու խոհերի՝ իր ու մեր կյանքից: Իրար հետ անկեղծ ենք ու սրտաբաց, շատ անգամ եմ մտքերս բաժանում նրա հետ:

Մնացինք ես ու մայրս: Կարծում եմ, բավական կլինի, եթե ասեմ, որ բոլոր մայրերի նման իմ մայրն էլ սիրում է, որ տանն ամեն ինչ հանգիստ ու խաղաղ լինի: Ու մյուս մայրերի նման նա էլ հպարտանում է մեզանով և շատ է անհանգստանում, երբ մեզ հետ անցանկալի բան է պատահում:

Ահա մեր ընտանիքի անավարտ դիմանկարը...

**ԳԱԳԻԿ ՄԱԽՍՈՒԴՅԱՆ**
Երևան, № 138 դպրոց,
10-րդ դասարան









## ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ



Հենց մուտքի մոտ փակցված են ստուդիայի այն սաների լուսանկարները, որոնց ստեղծագործությունները այս օրերին ցուցադրվում են Լենինականի մանկական պատկերասրահում: Նրանցից ամենափոքրը՝ Մուշեղ Մելիքյանը, 6 տարեկան է, ամենամեծը՝ Աննա Բարսեղյանը՝ 10:

Լենինականի մանկական գեղարվեստական ստուդիան ստեղծվել է 1978 թ. և այժմ ունի 3-ից 8 տարեկան մոտ 300 սան: Ստուդիան խմբեր ունի նաև Լենինականի մի շարք դպրոցներում և մանկապարտեզներում:

[illegible]

Իր գոյության չ[illegible] ստուդիայի սաների ուժերով կազմակերպվել են բազմաթիվ ցուցահանդեսներ Լենինականի մի շարք մանկական հիմնարկներում, հանրապետության և Միության տարբեր քաղաքներում: Իսկ մեր երկրի սահմաններից դուրս նրանց աշխատանքները ցուցադրվել են Ֆրանսիայում, Հնդկաստանում, Պակիստանում, ԳԴՀ-ում, Ինդոնեզիայում, Շրի Լանկայում և Հունաստանում:

— Մեզ մոտ հաճախակի են ցուցահանդեսներ կազմակերպվում,— ասում է մանկական պատկերասրահի դիրեկտոր, նկարչուհի Սուսաննա Մկրտչյանը:— Այս անգամ ցուցահանդեսը նվիրված է ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին:

Պատկերասրահի ցուցասրահներում առանձին բաժիններ են հատկացված փոքրիկ նկարիչներից յուրաքանչյուրին, ուր զետեղված են մոտ 2 տասնյակի չափ ջրաներկ և յուղաներկ աշխատանքներ:

Առանձնապես հետաքրքիր են 8-ամյա Հովիկ Հովհաննիսյանի «Մրկների ժողովը», «Զինվորներ», «Փոքրիկ ջութակահարը» և Անժելա Գրիգորյանի «Ամառ», «Լողացող կարապներ», «Ցատկապարանով աղջիկը», Էմմա Ոսկանյանի «Գետափին», «Մեր փողոցը». «Ծաղրածուն» և մյուսների ինքնատիպ նկարները:

Մոտենում եմ կապույտ ժապավեններով փոքրիկ նկարչուհուն՝ Էլլա Ծատուրյանին:

— Ինչպե՞ս է կոչվում քո այս նկարը,— հարցնում եմ նրան:

— «Մեր քաղաքը»,— ամաչկոտ պատասխանում է նա:

— Սիրու՞մ ես քո քաղաքը:

— Շատ: Համարյա ամեն օր, նախաճաշից հետո, մայրիկիս հետ դուրս եմ գալիս զբոսանքի: Շրջում ենք ծանոթ փողոցներով, մտնում Ստեփան Շահումյանի անվան կենտրոնական զբոսայգին, որտեղ ամեն անգամ հանդիպում եմ իմ խաղընկերներին:

— Իսկ դու ի՞նչ ես նկարել,— հարցնում եմ Էլլայի մոտ կանգնած ժպտերես աղջնակին՝ յոթնամյա Նունե Արծրունյանին:

— Գարուն,— անմիջապես պատասխանում է նա:

— Ինչու՞ ես սիրում գարունը:

—Որովհետև գարնանը ծաղիկները բացվում,— պատասխանում է:

Պատկերասրահից դուրս գալիս՝ հայացքս ընկնում է Հրայր Գյոնջյանի «Նկարիչը» կտավին. ներկապնակի մոտ նստած նկարչի հայացքը մտազբաղ է, սևեռուն: Թվում է՝ ձեռքին կախարդական վրձին է, որն ուր որ է շարժվելու է և նա հրաշքներ է վրձնելու կտավին:

Այդ մտքերով էլ դուրս եմ գալիս պատկերասրահից, հավատով, որ այդ նկարչի նման ստուդիայի սաներից յուրաքանչյուրը վաղ թե ուշ պատկերելու է պարզ ու սովորական իր հրաշքը:

**ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆ** Լուսանկարները՝ ՊՈՂՈՍ ՊՈՂՈՍՅԱՆԻ







Անհեղ Լենկթեմուրը, անհամար զորքերով, սև ամպի ու սև մարախի պես, գալիս պաշարում է Հայոց Արցախի Ջրաբերդը: Բերդի մեջ ապաստանում են շրջակա գյուղերի հայերը՝ երեսուն հազար մեծ ու փոքր և սկսում քաջաբար պաշտպանվել:

Վեց ամիս օր ու գիշեր գրոհում է Լենկթեմուրը, բայց չի կարողանում կոտրել հայերի դիմադրությունը, մտնել անառիկ բերդը: Նրա զորապետները ծունկի գալով, ասում են.

— Անհնարին է հայերի այս ամրությունը ճնշելը, տե՛ր մեր: Իզուր արյուն ենք թափում: Հրամա՛ն տուր հեռանանք մեր երկիրը:

— Քաղցով կնվաճեմ Ջրաբերդը,— գազազում է Լենկթեմուրը:— Ուր որ է հայերի հացը կսպառվի ու նրանք կամ սովամահ կլինեն, կամ անձնատուր:

Ասում է ու սաստկացնում պաշարումը:

Այսպես անցնում է ևս վեց ամիս: Եվ իրոք, հայերը խիստ նեղվում են, հացն սպառվում է: Ինչ անեն, ինչ չանեն, որ թշնամին վերացնի պաշարումը: Բոլորին

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

# ՀՆԱՐԱԳԵՏ ԳՅՈՒՂԱՑԻՆ

(Ղարաբաղյան զրույց)



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

այս հարցն էր տանջում, երբ մի օր բերդում եղած գյուղացիներից մեկը գալիս է հայ իշխանների մոտ, գլուխ տալիս, ասում.

— Պետք է թշնամուն ցույց տալ, թե մենք հացի անսպառ պաշար ունենք։ Եթե այդպես ցույց տանք, Լենկթեմուրը կհեռանա մեր աշխարհից։

Գյուղացին հանձնարարում է բերդում եղած կիրը բերել ու կուտակել պարսպի գլխին։ Նրա ցուցմունքով հազարավոր պարկերով կիր են բերում, հանձնում նրան։ Գյուղացին մի երկու հարյուր կին է կանչում, նրանց ձեռքին մի-մի մաղ դնում, թե կրափոշին մաղեցեք։ Կանայք սկսում են կրափոշին եռանդուն մաղել։ Քամին կրի սպիտակ փոշին ամպի պես քշում է դեպի հեռուները։ Այդ տեսնելով, Լենկթեմուրն ու նրա զորավարները հուսահատվում են։ Նրանց թվում է, թե հայերն ալյուր են մաղում, որի մղեղ փոշին ահա քամին տանում, ցրում է։ Նշանակում է հայերը հացի մեծ պաշարներ ունեն։

Լենկթեմուրն իսկույն հանում է պաշարումը և հեռանում Ջրաբերդից։

# ՎԱՆ

Աշխարհի ոչ մի երկիր իր պատմության ընթացքում այնքան մայրաքաղաքներ չի ունեցել, որքան Հայաստանը: Եվ դա է պատճառը, որ օտար ճանապարհորդներն ու ուսումնասիրողները Հայաստանը անվանել են «Դեգերող մայրաքաղաքների երկիր»: Եթե նույնիսկ չընհաշվենք պատմական այս կամ այն ժամանակահատվածում իրենց անկախ հռչակած հայկական փոքր թագավորությունների՝ Փոքր Հայքի, Ծոփքի և Կիլիկիայի հայկական թագավորության մայրաքաղաքները, այդուհանդերձ կունենանք 13 մայրաքաղաք՝ Վան, Արմավիր, Երվանդաշատ, Արտաշատ, Տիգրանակերտ, Վաղարշապատ, Արշակավան, Դվին, Բագարան, Երազգավորս, Կարս, Անի և վերջապես ու վերջնական Երևան:

Ամսագրի այս համարից սկսած կտպագրենք հոդվածներ՝ նվիրված վերը հիշատակված քաղաքներին:





ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Իմ հոգին անտակ ծով է ահագին,
Ինչպես մրրիկը հրաբխի վրա,
Հրեղեն վիշտ է շնչում իմ հոգին
Վանա ավերված դրախտի վրա:

Ռուս անվանի գրող Սերգեյ Գորոդեցկին այս տողերը գրել է Առաջին համաշխարհայինի տարիներին, երբ գաղթականներին օգնելու նըպատակով որոշ ժամանակ գտնվել է Վանում: Սիրահարվելով Վանա կապտակոհակ ծովի ափին կանաչ այգիների մեջ սուզված երեքհազարամյա քաղաքին, Գորոդեցկին նրան է նվիրել մի շարք բանաստեղծություններ և արձակ գործեր: Ավերակ քաղաքն ու նրա հնությունները Գորոդեցկու վրա ցնցող տպավորություն են գործել. «Պոմպեյը Վանի համեմատ մանկական խաղալիք է,— գրել է նա: —Վիթխարի Կոլիզեյն անգամ, որի ներսը միջնադարում մի ամբողջ քաղաք էր ապրում, ահագնությամբ զիջում է Վանի կառույցներին, եթե պահպանված բեկորներից ելնելով դրանք պատկերացնենք այն տեսքով, ինչպիսին եղել են: Նույնիսկ Ֆորումը՝ աշխարհի խոշորագույն հավաքավայրը, որ իր հոծությամբ ու խտությամբ շատ է հիշեցնում մարդկային գործերի մասին, կարող է խամրել Վանի ժայռ-քաղաքների տարերային պարզության առաջ»:

Քաղաքի պատմությունը դարեր շարունակ «Մհերի դռան» նման փակ էր ուսումնասիրողների առաջ, իսկ նրա սեպագիր արձանագրությունները ինչպես մոգական նշաններ պահպանում էին քար լռություն:

Առաջին եվրոպացի գիտնականը, որը սեպագիր արձանագրությունները ուսումնասիրելու համար այցելեց Վան, պրոֆեսոր Շուլցն էր: 1828-ին նրան հաջողվեց գերազանցապես Վանում և նրա շրջակայքում ընդօրինակել 38 արձանագրություն: Դրանք նա ուղարկեց Փարիզ, իսկ ինքը մնաց շարունակելու սկսած գործն ու խորանալու բազում դարեր ժայռերից համրորեն ու անթարթ նայող սեպագրերի գաղտնիքի մեջ: Սա-

կայն նրան չհաջողվեց իրականացնել երազանքը, որովհետև շուտով գիտնականը սպանվեց մի քուրդ ցեղապետի ձեռքով: Բայց դեռ կես դարից էլ ավելի պետք է անցներ, մինչև որ անգլիացի գիտնական, Օքսֆորդի համալսարանի պրոֆեսոր Ա. Հ. Սեյսը վերծաներ և հազարամյակներ լռած արձանագրությունները կրկին լեզու առնեին: Այսպես սկըսվեց Ուրարտուի կամ Վանի թագավորության պատմության ուսումնասիրությունը: Նրա մայրաքաղաք առասպելական Տուշպան աշխարհի հնագույն քաղաքներից էր: Այն պատմությանը հայտնի է մի քանի անուններով՝ Տուշպա, Տոսպ, Վանտոսպ, Երվանդավան, Շամիրամի քաղաք... Բայց նախընտրելին Վանն էր, անուն, որ ինչպես և քաղաքը, հասնում է հազարամյակների խորքը, անուն, որ ծագել է հնամյա Բիայնա անունից:

Վանա լճից արևելք, արգավանդ մի հարթավայրում «զարմանալի հովիվը, որ չի վախենում կռվից», «տիեզերքի արքան»՝ Ուրարտուի Սարդուրի I (840—825 մ. թ. ա.) թագավորը կառուցում է հզոր պարիսպ և արձանագրում. «Ես քարերն այս Ալնիունու միջից բերեցի, ես պարիսպն այս կառուցեցի»:

Ուրարտական աստվածները բարի աչքով էին նայում և հովանավոր էին կառուցող արքաներին: Քաղաքում կառուցվում է Շիվինիի՝ արևի աստծու տաճար և Տուշպան դառնում է նրա պաշտամունքի գլխավոր կենտրոն: Աջ ոտքով ծնկաչոք և արևի սկավառակը գլխից վեր պարզած այս աստվածը ուներ մի սիրասուն ու հրեշտակաթև կին՝ Տուշպուեա աստվածուհին, որի անունով էլ կոչվում է քաղաքը:

Քաղաքի կենտրոնում վեր է ձգվում ամրակող մի լեռ, ուր և ուրարտական արքաները կառուցում են իրենց հռչակավոր մայրաքաղաքի միջնաբերդը: Հազարավոր ստրուկներ օրնիբուն կարծր լեռան կողերին փորում են զինանոցներ ու կացարաններ, պահեստներ ու զորանոցներ, ախոռներ ու դիտակետեր: Միջնաբերդի ստորոտում կառուցվում է հզոր պարիսպ, որը Վանը դարձնում է անխորտակելի: Բայց ինչպես հաճախ է պատահում, ժողովրդի հիշողությունը բանաստեղծականացնում է անցյալը և Սարդուրի հզոր արքայի գործը վերագրում է թովիչ Շամիրամին: Պատմահայր Խորենացու միջոցով մեզ է հասել առասպելախառն այդ զրույցը: Շամիրամը, իբրև թե բերել է տալիս չորս բյուր և երկու հազար սևագործ բանվոր, վեց հազար ընտիր փայտագործ, քարագործ, պղնձագործ և երկաթագործ: Բազմարվեստ վարպետների այս հոծ բազմությունը լարված աշխատանքով կառուցում է բազում հրաշալի շինվածքներ, պղնձակերտ դռներով ամրակուռ պարիսպներ: Նրանք քաղաքում կառուցում են բազմաթիվ երկհարկ և եռահարկ ապարանքներ ու պալատներ, որոնք զարդարվում են նրբակերտ խճանկարներով: Շամիրամը քաղաքի մաքրակենցաղ բնակիչների համար կառուցում է նաև «չքնաղ ու զարմանքի արժանի բաղնիքներ»: Շքեղ ապարանքների, այգեստանների ու ծաղկանոցների այս քաղաքը պետք է որ առատ ջուր ունենար: Վանի մոտակայքում անհրաժեշտ քանակի ջուր չկար և մ. թ. ա. 8-րդ դարի առաջին քառորդում կառուցվում է 80 կմ երկարությամբ վիթխարի ջրանցք, որը սկիզբ առնելով Վերին Մժնկերտի աղբյուրներից, անցնում էր լեռնալանջերին փորված և տեղ-տեղ քարե պատնեշներով ամրացված հունով, իսկ ձորերի վրայով ջրանցքի համար կառուցվում են հատուկ կամուրջներ: Այն իր ժամանակի համար եզակի ջրանցք էր, ուներ 4,5 մ լայնություն և 1,5 մ խորություն և իր հորդահոս ջրերով կյանք էր հաղորդում հսկայական հողատարածություններին: Տնկվում են խաղողի այգիներ ու ծառաստաններ: Ասորեստանի արքա Սարգոն 2-րդի պատկերավոր արտահայտությամբ, «պտուղները և խաղողը թափվում էին հորդառատ անձրևի նման», իսկ «բուրումնավետ գինին հոսում էր հանց գետի ջուր»:

Մենուա I-ի (810—786 մ. թ. ա.) ջրանցքը, որ կառուցումից 28 դար հետո էլ աշխատեցնում էր 40 ջրաղաց, սերունդների համար չպահեց









Մենուայի անունը, և նրա փառքը այս անգամ ևս բաժին ընկավ Շամիրամին: Խորենացին գրում է, որ ջրանցքը քաղաք հասցնելով, Շամիրամը «քաղաքի ամբողջ արևելյան, հյուսիսային և հարավային կողմերը զարդարում է դաստակերտներով, վարսագեղ, սաղարթախիտ ծառերով զանազանակերպ պտուղներով ու տերևներով, և այնտեղ տնկում է բազմաթիվ առատաբեր և գինեբեր այգիներ: Պարսպած քաղաքն ամեն կերպ հոյակապ ու հոչակավոր է դարձնում և մեջը բնակեցնում է մարդկային անթիվ բազմություններ»: Պատմահոր այս ճոխ նկարագրության մեջ կարելի է գտնել Վանի կախովի այգու հեռավոր պատկերը: Այո, աշխարհի յոթ հրաշալիքներից մեկի՝ Բաբելոնի հոչակավոր կախովի այգու ավելի փոքր չափսերի կրկնօրինակը կառուցվել է նաև Վանում և հրաշագործության հեղինակը կրկին Մենուա Առաջինն է: Նա էր, որ կառուցեց Վանի Խալդյան դարպասներն ու տաճարները: Նաև անգերազանցելի հեծյալ էր նա. պահպանվել է մի արձանագրություն, որից իմանում ենք, որ նրա Արծիբե անունով նժույգը «Մենուայի տակ ցատկեց 22 կանգուն», այսինքն՝ 11 մ 39 սմ: Մենուայի նժույգի անունը հավանաբար կապ ունի հայերեն «արծիվ» բառի հետ և նրա նման, իսկապես որ արծվային թռիչքը անգերազանցելի մնաց երկու հազար ութ հարյուր տարի՝ մինչև 1975 թ., երբ գերմանացի Կ. Բերգմանը իր «Սվինգեր» նժույգով սահմանեց նոր համաշխարհային ռեկորդ:

Մենուայի Արգիշտի որդին ևս քաջ էր ու շինարար: Նրա օրոք ևս շարունակում է շենանալ երկիրը, կառուցվում են բազմաթիվ նոր բերդեր ու ամրություններ, տաճարներ ու ապարանքներ: Եվ ավելի է հարստանում ու ճոխանում երկրի մայրաքաղաք Տուշպան:

Բայց Վանի թագավորության հաղթական դափնիները հանգիստ չէին տալիս Ասորեստանի թագավոր Թիգլաթպալասար 3-րդին: Եվ Արգիշտիի որդի Սարդուրի 2-րդի ու ասորական զորքերի միջև 743-ին տեղի ունեցած ճակատամարտում ուրարտացիները պարտվեցին: Ասորական զորքը մի շարք բնակավայրեր ավերելուց հետո պաշարեց Տուշպան: Իսկ Տուշպան անառիկ էր: «Ես կողպեցի նրան Տուրուշպայում՝ նրա քաղաքում: Մեծ կոտորած արեցի նրա դարպասների առջև: Իմ արքայական պատկերաքանդակը Տուրուշպա քաղաքի դիմաց ես կանգնեցրի»— սեպագրում է Թիգլաթպալասարը:

Սարդուրի 2-րդի որդին՝ Ռուսա I-ը՝ (733—713 մ. թ. ա.), ըստ երևույթին, ապահովության համար արքունիքը տեղափոխում է Վանի հյուսիսարևմտյան ծայրամասը՝ Ռուսախինիլի կամ ինչպես ժողովուրդն է ասում «Ագռավաքար»: Այն տարիներին Վանը բազմամարդ և հսկա քաղաք էր, միայն արքունիքում ապրում էր 5 507 մարդ: Պահպանվել է Ռուսայի պալատական անձնակազմի ցուցակը, ըստ որի արքունիքում բնակվում էին 1113 անվանի անձինք՝ պալատականներ, 3 784 ներքինիներ, այդ թվում նաև վարչական պաշտոնյաներ, 152 սպասավորներ, 10 գինեգործներ, 400 զանազան այլ անձինք, ըստ երևույթին՝ զինվորներ, արհեստավորներ, անտառապետներ, ջրեպաններ, նաև ստրուկներ ու ստրկուհիներ:

Ներքինիներով առատ այս արքունիքը Ռուսայից հետո 123 տարվա ընթացքում 7 թագավոր փոխեց: Սակայն երկիրն անդարձ դեպի մայրամուտ էր գնում, և մ. թ. ա. 590 թվականին հզոր Վանի թագավորությունը կորցրեց անկախությունը:

Շուրջ երկու տասնամյակ անց, Հայոց գահին բարձրացավ Երվանդ Սակավակյացը: Երկրի մայրաքաղաքը շարունակեց մնալ Վանը, քանզի այն ժամանակվա Հայաստանի ամենամեծ ու ծաղկուն քաղաքն էր: Կարևոր էր և այն, որ Երվանդունի տոհմը իր գործունեությամբ երկար ժամանակ կապված էր Վանին և մոտակա Հայոց Ձոր գավառին: Եվ Վանի անվանափոխությունն էլ Երվանդավանի՝ այս տոհմի թագավորանիստ



քաղաք դառնալու արդյունքն էր: Վանը հիմնադրումից հետո շուրջ կես հազարամյակ մնաց մայրաքաղաք, մինչև մ. թ. ա. 4-րդ դարի վերջը, երբ Երվանդունիները մայրաքաղաքը տեղափոխեցին Արմավիր:

Երվանդունի հայոց արքաները ևս հոգ էին տանում քաղաքի ծաղկման ու բարգավաճման համար, բայց Վանը զարգացման բուռն ժամանակաշրջան ապրեց հատկապես հայ Արտաշեսյան թագավորության շրջանում, Տիգրան Մեծի (95—55 մ. թ. ա.) օրոք, երբ նա նվաճված երկրներից այստեղ բնակեցրեց բազմաթիվ հրեա, հույն և ասորի արհեստավորներ և առևտրականներ: Քաղաքը քանիցս ավերվեց ու վերաշինվեց, և Տիգրանի բերած այլազգիները ցիրուցան եղան: 4-րդ դարի դեպքերը նկարագրելիս Թովմա Արծրունին պատմում է, թե ինչպես երկու դավաճաններ՝ Մեհրուժանն ու Վահանը պարսկական զորքերի գլուխն անցնելով «գրավեցին Վանտոսպը, ավերեցին գեղեցկաշեն ու ամուր տները, գերեվարեցին քաղաքի բնակիչներին՝ 5000 հրեաների, 18 000 քրիստոնյաների, և այն հրեաներին, որոնց դեռևս Բարզափրանն էր գերել բերել Տիգրանի հրամանով: Նրանց քշեցին Սպահան...»

Արաբական տիրապետության շրջանում քաղաքն ավերվում և տընտեսությունն անկում է ապրում: Բայց Հայաստանի անկախության վերանվաճումից հետո և հատկապես 10—11-րդ դարերում, երբ Վանը Վասպուրականի մայրաքաղաքն էր, կրկին դառնում է Հայաստանի խոշորագույն քաղաքներից և բնակչությունը հասնում է տասնյակ հազարների: Նորից է ճոխանում, նոր պալատներով զարդարվում: Մեծ շինարարություն է ծավալում հատկապես Դերենիկ Արծրունին: Նրա որդին՝ Գագիկ Արծրունի թագավորը, շարունակելով հոր գործը, կառուցում է եկեղեցիներ ու ամրություններ, քաղաքի միջնաբերդում պալատներ և «ոսկեզօծ պատշգամբավոր խրախճանասենյակներ» ու գետնի տակով, տաշած քարերից ջրմուղ է անցկացնում:



Բայց ծովահայաց չքնաղ քաղաքին վիճակված չէր խաղաղ կյանք: Իրար են հաջորդում վաչկատուն ու վայրենի հրոսակները՝ սելջուկ թուրքեր, մոնղոլներ ու թաթարներ, պարսիկներ... Վանը հետզհետե կորցնում է շքեղությունն ու փայլը: Այն երկար ժամանակ դառնում է Վանի վիլայեթի կենտրոն: Քաղաքի կործանման նախերգանքը եղան 1895—96 թթ. ջարդերը: 1915-ին արվեստասեր և արհեստասեր վանեցիները զենքը ձեռքներին անհավասար հերոսամարտի ելան, շատերը զոհվեցին, իսկ փրկվածները սփռվեցին աշխարհի տարբեր ծայրերը:

Դեռ ուրարտական շրջանից Վանը հայտնի էր մետաղագործությամբ ու պղնձագործությամբ, կտավագործությամբ ու մետաքսագործությամբ, բազմաթիվ այլ արհեստներով: Ալքիմիական ձեռագրերը հայտնում են, որ միջնադարում Վանից արտասահմանյան երկրներ էր արտահանվում բորակ, որն աշխարհում հայտնի էր Վանա բորակ անունով: Արտասահմանյան երկրների հետ առևտրական սերտ կապի մասին է վկայում նաև միջին դարերի արաբ աշխարհագիր Աբուլ Ֆիդային, որը գրում է, թե «այստեղ որսում են տառեխ կոչված ձուկը և արտածում աշխարհով մեկ»: Վանեցի ձկնորսները իսկապես որ տառեխը տանում էին հեռու երկրներ և այդ ձուկը այնքան մեծ տարածում էր ստացել, որ նրա անունը մուտք է գործել հունարենի մեջ, և հույները աղ դրած ձկանը ասում են «տառեխիս»:



Մինչև Առաջին աշխարհամարտը Վանում կար ավելի քան երկու հարյուր ոսկերիչ ու արծաթագործ: Նրանց հռչակն այնքան էր տարածված, որ նույնիսկ տասնամյակներ անց էլ Սպահանի մի շարք արծաթագործներ իրենց արտադրանքի հարգն ու գինը բարձրացնելու համար դըրանց վրա դրոշմում էին «Վան» անունը:

Այժմ Վանը գավառական խղճուկ քաղաք է, ուր իսպառ մոռացվել են քաղաքին փառք բերած արհեստներն ու արվեստները:

ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՈՒՂՏՆ ՈՒ ԸՆՁՈՒՂՏԸ



Ուղտը ուղտ չէր
Ուզում լինել,
Ուղտն ընձուղտ էր
Ուզում կոչվել:

Մի օր մեջքին
Գորգ է փռում
Եվ նախշունիկ
Ընձուղտ դառնում:

Ծիծաղում է
Քամին ետքից
Եվ թռցնում
Գորգը մեջքից:

— Վա՜հ, ո՜ւղտ է, ո՜ւղտ,—
Ծուռտի՜կ մի ուղտ,—
Ծիծաղում են
Ծիտ ու ընձուղտ:

Ուղտն ամոթից
Դուրս չի գալիս
Անապատից:



# ՎԵՃ

— Ի՞նչ գույն ունի այս աշխարհը,
Ի՞նչ գույն ունի...
— Կապու՛յտ, կապու՛յտ,—
Ծլվլում է մի թռչուն:
— Ճերմակ, ճերմակ,—
Տզտզում է մի մեղու:
— Սև գույն, սև գույն,—
Ճկճկում է մի կրիա:
Ու վիճում են,
Ու վիճու՛մ են...
Թռչունը իր
Կապույտ վերից,
Տզզան մեղուն՝
Ճերմակ ծաղկի
Խոր բաժակից,
Իսկ կրիան՝
Անթափանցիկ
Իր պատյանից:



Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ




● — Ինչո՞ւ էլ չես երգում, Փեթյո:
— Որովհետև բժիշկն արգելեց:
— Հավանաբար նա ձեր տան մոտ է ապրում:

● Փեթյոն դիմելով վաճառողուհուն, ա-
— Խնդրում եմ ինձ կոշիկի մածուկ տվեք:
— Ինչպիսի՞ն:
— Երեսուներկու համարի համար:

● — Ինչու՞ են ձեռքերդ այդքան կեղտոտվել,— հարցրեց Փեթյոյին մայրը:
— Երեսս եմ լվացել, մայրիկ,— պատասխանեց Փեթյոն:

● — Այդ ու՞ր ես վազում, Փեթյո:
— Շատ հոգնած եմ, վազում եմ, որ շուտ տեղ հասնեմ ու հանգստանամ:

*Բուլղարերենից թարգմանեց՝*
*ԶԱՐԻ ԽԱՆԳԱՐԱՆՅԱՆԸ*




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ԱՐԵՎԱՅԻՆ ԺԱՄԱՑՈՒՅՑԻՑ ՄԻՆՉԵՎ ԴԻՍՓԼԵՅ

Երկրագնդի վրա ժամացույց գոյություն է ունեցել վաղնջական ժամանակներից, երբ մարդիկ նույնիսկ չեն գիտակցել այդ. արևը, լուսինը և աստղերը մարդկային կյանքը բաժանել էին գիշերվա և ցերեկվա:

Հազարամյակներ անցան, մարդու գործունեությունը քանի գնաց բարդացավ, և արդեն պահանջ զգացվեց ինչ-որ ձևով ժամանակը տարբերել: Հին գրվածքներում հաճախ ենք հանդիպում այսպիսի արտահայտությունների «մարդն աշխատեց մինչև առաջին աքլորականը» կամ՝ «երբ արևը զենիթին հասավ, մենք մոտեցանք գյուղին»: Սրանք այժմ որպես գեղեցիկ դարձվածքներ են հնչում, իսկ հեռավոր անցյալում ճիշտ ժամանակն էին ցույց տալիս: Առաջին աքլորականչը լինում է խոր գիշերին, արևը զենիթին է հասնում միջօրեին:

Ցերեկը հավասար մասերի բաժանելու համար մարդիկ առաջին ժամացույցները ստեղծեցին. դրանց վրա թվատախտակ կար, բայց սլաքներ չկային: Այդ ժամացույցները հին աշխարհի մեծ քաղաքների կենտրոնում էին տեղադրում: Արևային կամ ցերեկային էին անվանում դրանց: Արևային ժամացույց կարելի էր պատրաստել նաև արշավի ժամանակ: Դրա համար անհրաժեշտ է գավազանի վրա հավասար չափերի նշաններ անել և վրայից հորիզոնական դիրքով փայտիկ ամրացնել. փայտիկից գավազանի վրա ընկնող ստվերից էլ հենց կարելի է որոշել ժամանակը: Պարզ է, որ նման ժամացույցները հարմար էին միայն պայծառ եղանակներին: Արևը լավ է, բայց ավելի լավ են ջուրը և ավազը, մտածեցին մարդիկ: Եվ ավազի ու ջրի ժամացույցներ ստեղծեցին: Բազմաթիվ դարեր ծառայեցին սրանք մարդկանց: Դեռ 150 տարի առաջ ծովային նավերի վրա հերթագայողները կես ժամը մեկ շուռ էին տալիս ավազաշշերը: Հին Հռոմում պարզ ջրային ժամացույցները դրվում էին շուկայում, արևայինի կողքին: Երբ սրանք կեղտոտվում էին, ստուգվում էին արևայինով:



Ջրային պարզ ժամացույցներն աստիճանաբար իրենց տեղը զիջեցին բարդ և թանկ մեխանիզմներին: Երևան եկան հոսող ջրի օգնությամբ աշխատող զարթուցիչ, մեխանիկական թատրոն ներկայացնող կամ էլ զվարճալի ու թանկ խաղալիք ծառայող ժամացույցներ: Միայն տոհմիկ և հարուստ մարդիկ էին դրանք իրենց տներում:

Միջին դարերում Եվրոպայում օգտագործում էին «կրակի» ժամացույցներ

«որքան մեղրամոմ այրվեց» կամ «ինչքան յուղ այրվեց լամպի մեջ» սկզբունքով: Մոմերի, ինչպես առաջներում գավազանի ու ձագարի վրա, նշաններ էին անում: Վանականներն ու ժամկոչները եկեղեցիներում ժամանակը որոշում էին ըստ այդ նշանների և ազդարարում էին մարդկանց։

Վերջապես, 750 տարի առաջ սուլթան Սալադինը Ֆրիդրիխ 2-րդ կայսրին ծանրակներով մեխանիկական ժամացույց նվիրեց: Դա մեծարժեք իր էր՝ 5 հազար դուկատ արժողությամբ, որով մի քանի հարյուր գերի կարելի էր գնել ու դրանցով մի քանի գյուղ բնակեցնել: Այդ օրվանից եվրոպական միապետները և նրանց հայտնի վարպետները իրար միջև մրցություն ծավալեցին: Յուրաքանչյուր տիրակալ իր մայրաքաղաքի կենտրոնում աշտարակի պատի վրա ծանրակավոր ժամացույց էր ուզում տեղադրել տալ: Դրանցից առաջինը՝ Մեծ Թոմը, տեղադրեցին Լոնդոնում, Վեստմինստերյան աշտարակի պատի վրա, Էդուարդ 1-ին թագավորի օրոք: Այժմ նրա տեղում հռչակավոր Բիգ Բենն է՝ Մեծ Բենը:

1624 թվականին Մոսկվայի Կրեմլի աշտարակներից մեկի պատին (այժմ Սպասսկի է կոչվում) նույնպես ծանրակավոր ժամացույց տեղադրեցին։ Այդ ժամացույցները մեծ էին ու ծանր: Միայն ծանրակները կես տոննա էին կշռում:

Մեխանիկական առաջին փոխադրովի ժամացույցը հայտնվեց Ֆրանսիայի թագավոր Լյուդովիկոս 11-րդի մոտ: Այն տեղավորել էին մի մեծ սնդուկում, որը, ճանապարհորդելիս, ամրացնում էին ձիու վրա: Ձիուն խնամելու համար օրական 5 սուով ձիապան էր վարձված:

Մեխանիկները երկար ժամանակ աշխատում էին մեխանիկական ժամացույցները փոքր և թեթև դարձնել: Վերջապես, Նյուրնբերգցի հայտնի ժամագործ Պետեր Հենլեյնը հասկացավ, որ շղթայից կախված ծանրակը կարելի է փոխարինել նուրբ և թեթև զսպանակով։ Դա մոտավորապես 1 500 թվականներին էր: Նրա սարքած գրպանի առաջին ժամացույցի վրա միայն մի սլաք կար՝ ժամ ցույց տըվող: Ապակի էլ դեռ չէին կարողանում հագցնել այդ ժամացույցներին: Դրա փոխարեն ժամացույցները տեղադրվում էին գեղեցիկ և թանկ տուփի մեջ, որոնցով նշանավոր մարդիկ պարծենում էին: Երկու հարյուր տարի հետո երևան եկավ րոպեներ ցույց տվող սլաքը, դրանից ևս վաթսուն տարի անց՝ վայրկյան ցույց տվող սլաքը: Իսկ ապակի սկսեցին հագցնել ժամացույցներին 1600 թվականներից:

Հմուտ ժամագործները անընդհատ կատարելագործում էին իրենց վարպետությունը, ստեղծում մեկը մյուսից նուրբ և բարդ մեխանիզմներ։ Հանդես եկան ժամացույցներ, որ ականջօղերի մեջ էին տեղադրում, կային, որ սագի ձու էին հիշեցնում, միաժամանակ և՛ մեխանիկական փոքրիկ թատրոն, և՛ երգեհոնիկ էին ներկայացնում: Ծատերը գիտեն ռուս մեծ վարպետ Կուլիբինի ստեղծած ժամացույցների մասին, որոնցից մի քանիսը պահպանվում են թանգարաններում և աշխատում են մինչև օրս:

Բայց և այնպես գյուտարարները գոհ չէին: Մեխանիկական ժամացույցները ճիշտ են աշխատում միայն սկզբնական շրջանում. աստիճանաբար նրանք կեղտոտվում են, նուրբ քսուքը օքսիդանում է, նրանց վրա ազդում է խոնավությունը, ջերմաստիճանի տատանումները, ցնցումները: Ժամանակի ընթացքում ուզածդ մեխանիկական ժամացույցը սկսում է «խաբել»: Իսկ ժամանակի ճշգրտությունը հիմա անհրաժեշտ է ամեն մի մասնագետի, լինի նա տիեզերագնաց, էլեկտրագնացքի վարորդ թե ուսուցիչ։

Սկզբում զսպանակը, որը ժամանակի ընթացքում թուլանում է, էլեկտրականությամբ փոխարինեցին։ Պատի այդպիսի ժամացույց հիմա յուրաքանչյուր հանրախանութում կարելի է գնել: Մի փոքրիկ մարտկոց ես տեղադրում նրա մեջ, և ժամացույցը մի ամբողջ տարի առանց լարելու աշխատում է:

Վերջին տարիներս ճոճանակը, անկերները և ատամնանիվները դուրս են գալիս գործածությունից և փոխարինվում են միկրոէլեկտրոնային սխեմաներով: Ձեռքի մեխանիկական ժամացույցները, որոնց այնքան վարժված է մարդկությունը, իրենց վերջին տասնամյակներն են ապրում: Նրանց փոխարինելու են գալիս ժամացույց-դիսփլեյները: Դիսփլեյը մեր դարաշրջանի գիտության և տեխնիկայի նորագույն հայտնագործությունն է: Այդ ժամացույցները չեն լարվելու, նրանց մեջ չեն լինելու ո՛չ զսպանակ, ո՛չ ատամնանիվ, իսկ թվատախտակի և սլաքների փոխարեն էկրան է լինելու, որի վրա շողալու է ժամանակը։

# ԱՇԽԱՐՀԻ ԵՐԿՐԱԿԵՆՏՐՈՆ ԵՎ ԱՐԵՎԱԿԵՆՏՐՈՆ ՀԱՄԱԿԱՐԳԵՐ



Աշխարհի կառուցվածքի մասին առաջին պատկերացումները ձևավորվել են աստղագիտության ծագման հետ միասին, սրանից մի քանի հազար տարի առաջ։ Բնականաբար, սկզբում դրանք չափազանց պարզունակ էին և որոշ մտացածին մանրամասնություններով կրրկնում էին այն, ինչ կարելի էր տեսնել շրջապատում։ Հին եգիպտացիներն, օրինակ, այն կարծիքին էին, որ Տիեզերքն իրենից ներկայացնում է մի մեծ հովիտ, որի կենտրոնում գտնվում է Եգիպտոսը։ Նրանց պատկերացմամբ երկինքը կոշտ ծածկոց էր, որը հենվում էր սյուների վրա։ Մոտավորապես նույն կերպ էին պատկերացնում աշխարհի կառուցվածքը նաև հին Չինաստանում։ Չինացիների կարծիքով աշխարհը մի ուղղանկյուն հարթություն էր, որը մի փոքր թեքված էր դեպի արևելք, ինչը և պատճառ էր դարձել, որ բոլոր գետերը հոսեն այդ ուղղությամբ։ Իսկ երկինքն, ըստ նրանց, թեքված էր դեպի արևմուտք, որի հետևանքով բոլոր լուսատուներն արևելքից շարժվում էին դեպի արևմուտք։

Արդեն մեր թվարկությունից առաջ վեցերորդ դարում մեծ մաթեմատիկոս Պյութագորասն արտահայտեց այն միտքը, որ ինչպես Երկիրը, այնպես էլ երկնային լուսատուներն ունեն գնդի ձև։ Ըստ Պյութագորասի՝ Տիեզերքն իրենից ներկայացնում էր պտտվող համակենտրոն գնդոլորտների համակարգ, որոնք կառուցված էին բյուրեղապակուց։ Դրանց վրա ամրացված էին Լուսինը, Արեգակը և մոլորակները, իսկ ամենահեռու անշարժ գնդոլորտի վրա գտնվում էին բոլոր աստղերը։ Այդ ամենի կենտրոնում գտնըվում էր ոչնչի վրա չհենվող անշարժ Երկիրը։ Պյութագորասյան այդ Տիեզերքը փաստորեն իրենից ներկայացնում էր առաջին երկրակենտրոն (գեոցենտրիկ) համակարգերից մեկը։ Այդ համակարգը հետագայում ենթարկվեց զանազան կատարելագործումների, բայց հիմնական էությունը պահպանեց ավելի քան երկու հազարամյակ։

Երկրակենտրոն համակարգերի հետագա կատարելագործման ու գործնական նպատակներին հարմարեցնելու գործում առավել նշանակալից է անցյալի երկու խոշորագույն մտածողների՝ Հիպարքոսի և Պտղոմեոսի կատարած աշխատանքը։ Հիպարքոսի շնորհիվ աստղագիտությունը հրաժարվեց բյուրեղապակյա մտացածին գնդոլորտներից և անցավ շատ ավելի բարդ համակարգերի կառուցմանն ու օգտագործմանը։ Սակայն երկրակենտրոն համակարգն իր դասական ձևով ստեղծվեց Պտղոմեոսի կողմից և կող-





վում է նրա անունով։ Նրա հիմնական աշխատությունը, որը մեզ է հասել հետագայում արաբականացված «Ալմագեստ» անունով, իրենից ներկայացնում է հին աստղագիտության իսկական հանրագիտարան։ Այդ աշխատության մեջ է Պտղոմեոսը նկարագրել իր մեթոդը, որի օգնությամբ կարելի էր ցանկացած ժամանակի համար հաշվարկել մոլորակների դիրքը երկնքում։ Նրա կողմից երկրակենտրոն սովորական համակարգին ավելացված նորությունը հետևյալն էր։ Եթե Լուսինը և Արեգակը անմիջականորեն պտտվում էին Երկրի շուրջը, ապա մոլորակները մասնակցում էին ավելի բարդ շարժման։ Նրանք պտտվում էին էպիցիկլեր կոչվող փոքր շրջանագծերով, որոնց կենտրոններն իրենց հերթին շրջանագծով շարժվում էին Երկրի շուրջը։ Այդ մեծ շրջանագծերը կոչվում են դիֆերենտներ։

Պտղոմեոսի կողմից ստեղծված այդ համակարգը թույլ էր տալիս բավականին լավ բացատրել մոլորակների շարժումները, սակայն հեռու լինելով իրականությունից, հետագայում սկսեց հանգեցնել ավելի ու ավելի մեծ սխալների։ Հետաքրքիր է, որ երկրակենտրոն առաջին համակարգերի ստեղծմանը զուգահեռ, որոշ մտածողներ արդեն առաջարկում էին նաև աշխարհի արևակենտրոն (հելիոցենտրիկ) համակարգեր, որոնցում Տիեզերքի կենտրոնի դեր էր կատարում Արեգակը։ Դրանցից ամենանշանակալիցը Արիստարքոս Սամոսացու առաջարկած համակարգն էր, ըստ որի Արեգակն իր չափսերով շատ ավելի մեծ էր Երկրից և գտնվում էր ողջ աշխարհի կենտրոնում։ Սակայն այն ժամանակ արևակենտրոն համակարգերը ճանաչում չգտան։

Միայն տասնվեցերորդ դարում իր հաստատումը գտավ իրական արևակենտրոն համակարգի գաղափարը։ Դրա հեղինակն էր լեհ մեծ գիտնական Նիկոլայ Կոպեռնիկոսը։ Նա տվեց Արեգակի համակարգում մոլորակների և Լուսնի շարժումների ճիշտ սխեման և նույնիսկ կարողացավ գտնել մոլորակների Արեգակից ունեցած համեմատական հեռավորությունների բավականին ճշգրիտ չափը։

**ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ՄԵՐ ՄԱՐԶԱԴՊՐՈՑՆԵՐԸ

# ասպետական խաղ



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Շատերի պես, Երևանի № 140 դպրոցի աշակերտներն էլ, սուսերամարտի մասին գիտեին այնքան, որքան գրված էր պատմության դասագրքերում. «Սուսերամարտը միջնադարյան ասպետական խաղ է, որով զբաղվել են ազնվականները»:

Բայց ահա դպրոցի ֆիզկուլտուրայի ուսուցիչ Մարտուն Գևորգյանը մի օր (այդ 1952 թվին էր) իր հետ դպրոց բերեց մի զույգ սուսեր: Սուսերամարտիկների խմբակին շատերը անդամագրվեցին և սկսեցին մարզվել, երազելով դառնալ ճարպիկ ու խիզախ, քաջ ու համարձակ:

Ամիսներ անց, Նորագավիթ թաղամասում, բացվեց սուսերամարտի մասնագիտացված մարզադպրոց:

Տարիների հետ ընդարձակվեց ու մեծացավ դպրոցը, կառուցվեցին նոր մասնաշենքեր՝ հարմարավետ մարզասենյակներով, ստեղծվեցին մարզվելու հիանալի պայմաններ: Պատանի մարզիկների ուժերով դպրոցը պարուրվեց դեկորատիվ ու մրգատու ծառատեսակներով:

Այնտեղ շարունակաբար հնչում են միմյանց բախվող սուսերների շաչյուն, խորհուրդներ տվող մարզիչների խիստ ու հատու հրահանգները.

— Առա՛ջ... խոցի՛ր... վերև՛... բա՛րձր... նորի՛ց...

Այսպես, հնամենի բարդ ու գեղեցիկ այդ մարզաձևի գաղտնիքներին են ծանոթանում շուրջ 350 երեխաներ: Նրանցից շատերն արդեն իրենց «խոսքն» են ասել մեծ սպորտում, պատվո քննություն հանձնել թե՛ հանրապետական, թե՛ միութենական մրցումներում ու առաջնություններում: Պերճուհի Հունանյանը, Սարգիս Այվազյանը, Արմեն Նավասարդյանը, Գեղամ Հովհաննիսյանը և շատ ու շատ ուրիշներ, նոր էջերով են հարըստացրել մարզադպրոցի տարեգրությունը: Միջանցքը վերածվել է փոքրիկ թանգարանի: Այստեղ փակցված են չեմպիոնների ու մրցանակակիրների լուսանկարները, մարզական «ավարներ» գավաթներն ու դիպլոմները, հուշանվերները:

Դպրոցի «Կայծակ» թերթիկում հայտնված վերջին հեռագրերից մեկը ավետում է, որ համամիութենական երիտասարդական երրորդ խաղերի ծրագրով Մինսկում անցկացված սուսերամարտի մրցումներում դպրոցի սան Արմեն Նավասարդյանը նվաճել է արծաթե մեդալ:

Հարուստ մարզական կենսագրություն ունի դպրոցը: Շնորհալի մարզիկները իրենց սրերը խաչաձևել են տարբեր երկրներում Ֆրանսիայում ու Եգիպտոսում, Բուլղարիայում ու Իտալիայում, Լեհաստանում... Շատերը սպորտի վարպետներ են ու վարպետության թեկնածուներ, կարգային մարզիկներ:

Երևանի № 140 դպրոցի աշակերտ, մարզադպրոցի սան Սարգիս Այվազյանը երկրի պատանիների չեմպիոնն է, դպրոցականների հանրապետական սպարտակիադայի հաղթող, սուսերամարտի Սովետական Միության հավաքականի անդամ: Մարզիչները մեծ հույսեր են կապել նաև Կարեն Ավանեսովի, Վարդան Բաղալյանի, Տիգրան Սայադյանի, Արաքսյա Թևոսյանի, Սամվել Պողոսյանի և մյուսների հետ: Այս մարզիկ-մարզուհիները արդեն խոշոր մրցաշարերի հարուստ փորձ ունեն և հմտացել են սիրված մարզաձևում:

Մարզադպրոցն ունի մասնաճյուղեր Արտաշատում և Շահումյանի շրջանում: Ազիզբեկովում արդեն մի քանի տարի է, ինչ գործում է մարզադպրոցի ճամբարը:

Պատանի սուսերամարտիկներից յուրաքանչյուրը գիտի, որ հաղթանակը նվաճվում է տարիների լարված ու տքնաջան աշխատանքով և համառ մարզումներով:

ԼԱՎՐԵՆՏԻ ՄԻՐԶՈՅԱՆ




Անգլիայում ստեղծվել է մանկական էլեկտրոնային գրամեքենա՝ այբուբենի ուսուցման նպատակով: Համապատասխան ստեղնը սեղմելիս, էլեկտրոնային «դաստիարակը» տվյալ տառը վերարտադրում է բարձրաձայն: Այբուբենն իմացողների համար ծրագիրն ավելի բարդ է. բարձրաձայն արտաբերվում է հիշողության սարքում գրանցված 160 բառերից որևէ մեկը, և աշակերտը պետք է տպագրի այն: Եթե ամեն բան կարգին է, մեքենան լռում է, իսկ սխալի դեպքում պահանջում է բառը տպագրել ևս մեկ անգամ: Նորից սխալվելիս՝ բառն արտասանվում է [illegible]:




Մեծ Բրիտանիայում աղվեսները կամացկամաց տեղափոխվում են արդյունաբերական մեծ կենտրոնների արվարձանները և փոքր քաղաքները: Սովորաբար նրանք բնակություն են հաստատում պահեստների, գյուղատնտեսական ֆերմաների, ֆաբրիկաների հտնաբակերում, ինչպես նաև երկաթուղային կայարանների ընդարձակ տարածություններում: Հիմնականում սնվում են մկներով և առնետներով, որոնք, հայտնի է, արագ բազմանում են լքված շենքերում և տնտեսական մեծ վնաս են պատճառում: Բացի այդ, մկներն ու առնետները վտանգավոր տարափոխիկ հիվանդությունների մանրէներ տարածող են:



## ԴԻՆՈԶԱՎՐԵՐԻ ՀԱՍԱԿԱԿԻՑԸ

Ավելի քան 250 միլիոն տարի սրանից առաջ բուսական աշխարհում գերակշռում էին մերկասերմերը: Կյանքի հնագույն շրջանի՝ պալեոզոյան դարաշրջանի քարածխի ժամանակաշրջանում երկրի վրա բարգավաճում էին պտերանմանները, որոնք, ի տարբերություն ժամանակակից խոտանման պտերների, հսկայական ծառերի տեսք ունեին: Այդ նույն ժամանակաշրջանում էլ սկսեցին հանդես գալ սերմնավոր պտերները և առաջին մերկասերմերը, որոնք արդեն պերմի ժամանակաշրջանում սկսեցին տարածվել ամենուրեք:

Մերկասերմ բույսերից հատկապես արագ էր տարածվում գինկգոն:

Այդ ժամանակաշրջանում երկրի վրա ապրում էին գիգանտ կենդանիներ՝ դինոզավրեր, ստեգոզավրեր, դիպլոկոկներ, որոնք մեծ մասամբ, որպես բուսակեր, սնվում էին նաև գինկգոյի տերևներով ու պտուղներով: Գինկգոյի պտուղներով էին սնվում նաև նախնադարյան թռչունները՝ արքեոպտերիքսները:

Մեզոզոյան դարաշրջանի վերջերում մերկասերմերի քանակությունը սկսեց խիստ նվազել: Նվազեցին նաև գինկգոյի անտառային տարածությունները: Արդեն կայնոզոյան դարաշրջանի պալեոգենի ժամանակաշրջանում գինկգոն հանդիպում էր սահմանափակ տարածության վրա՝ Չինաստանում և Ճապոնիայում:

Երբ կայնոզոյան դարաշրջանի անտրոպոգեն ժամանակաշրջանում երկրագնդի վրա հանդես եկավ մարդը, գինկգոն արդեն անհետացման եզրին էր գտնվում: Սակայն ներկայիս Չինաստանի և Ճապոնիայի տարածքում ապրող հնագույն ժողովուրդներին շատ դուր եկան այս զարմանահրաշ բույսի պտուղները: Գինկգոն մտավ մշակության մեջ և միաժամանակ պաշտամունքի առարկա դարձավ: Բուդդայական կրոնը հետագայում այս բույսը սրբազան հայտարարեց...

Հենց այս հանգամանքն էլ գինկգոյի փրկության պատճառը հանդիսացավ:

Գինկգոյին ժամանակակից բույսերը վաղուց են վերացել երկրի երեսից, իսկ գինկգոն հանդիպում է միայն բուսաբանական այգիներում, դենդրարիումներում, բուդդայական տաճարների ու դամբարանների շրջակայքում:

Արտաքին տեսքով ևս գինկգոն նման չէ ժամանակակից ծառերին, տերևները հովհարաձև են, երկու բլթականի: Մինչև 40 մետր բարձրության հասնող այդ հսկայական, ճյուղատարած ծառը խորհրդավոր տեսք ունի. չէ՞ որ գինկգոն դինոզավրերի հասակակիցն է:

Գինկգոյի մի խոշոր ծառ կա Երևանում, Հաղթանակի կամրջի մոտ գտնվող ծաղկային տնտեսության բակում: 1927 թվականին այստեղ հիմնադրվել է մեր հանրապետության առաջին բուսաբանական այգին, որը հետագայում նպատակահարմար է գտնվել տեղափոխել Ավան գյուղի մոտ: Այդ ծառը նախկին բուսաբանական այգուց է մնացել: Նրա բարձրությունը հասնում է 12 մետրի, բավականին լավ է անում, միայն ափսոս, որ արական նմուշ է, պտուղ չի տալիս, այլապես գինկգոյի տեղական բույսերի սերմեր կունենայինք և մեծ քանակությամբ գինկգոյի նոր բույսեր կաճեցնեինք: Պետք է ճանաչել և լավ պահպանել գինկգոյի երևանյան նմուշը:

**ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
կենսաբանության դոկտոր,
պրոֆեսոր

## «ՊԻՈՆԵՐ» № 12-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. Գերբ: 2. Բլոկ: 3. Կոլա: 4. 5. 6. Աշխաբադ, Դուշանբե, Երևան: 7. Նուրեկ: 8. Կարելիա: 9. Արթիկ: 10. Կալինին: 11. Նևա: 12. Ազատ: 13. Տաշքենդ: 14. Դեկրետ: 15. Տոմսկ: 16. Կելդիշ: 17. Շահումյան: 18. Նիզամի: 19. «Իսկրա»: 20. Անդիջան: 21. Նարվա: 22. Ալիխանով: 23. Վուչետիչ: 24. Զուդ: 25. Դաղստան: 26. Նեբիտդագ: 27. ԳՈԷԼՐՈ:

### ԳԱՂՏՆԱԳՐԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Էստոնիա, Ուկրաինա, Լիտվա, Լատվիա, Վրաստան, Մոլդավիա, Թուրքմենստան, Ադրբեջան, Ուզբեկստան, Կիրգիզիա, Տաջիկստան, Ռուսաստան, Բելոռուսիա, Հայաստան, Ղազախստան:

Էտյուդային լուսանկարը՝

ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՋՈՂՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 26.11.1982 թ.: Ստորագրված է տպագրության 3.1.1983 թ.: ՎՖ 05710: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 70032: Պատ. 2499: Գինը՝ 15 կ.:

Сдано в набор 26.11.1982 г. Подписано к печати 3.01.1983 г. Формат 70×100 1/16. ВФ 05710. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч-изд. листа. Тираж 70032. Заказ 2499. Цена 15 коп.